

Լենին, դու կյանք ես հարակեզ,
Դու պատմությունն ես մարդկային,
Որ շառաչում է գետի պես
Դեպի օվկիանն ապագայի։

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ




№ 11 1957 թ.
ՆՈՅԵՄԲԵՐ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
2?-ՐԴ ՏԱՐԻ

# Անմոռանալի օրը

Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

1

Ո՞վ կա տանը, ոչ ոք չկա,
Ձի էլ հարցնի ոչ մեկին.
Սուսիկ-փուսիկ պիտի գնա,
Գտնի զինվոր հայրիկին:

Այսպես, Օլգան ելավ ծածուկ,
(Աղջիկ չէ, այլ մի կրակ)
Պետրոգրադի ցուրտ փողոցում
Քայլում է նա մեն-մենակ:

Սակայն, ահա շենքը ծանոթ,
Ալ դրոշը տանիքին.
Այս տան բակից իրենք մի օր
Ճամփա դրին հայրիկին...

Սմոլնին է... նա է, որ կա:
Օլգա, ո՞ւմն ես սպասում.
Ու տրոփեց սիրտն աղջկա,
Տեսեք, ոնց է նա վազում...

Սակայն, ահա իր դեմ կանգնած
Հրացանավոր մի քեռի,
Բարձրահասակ, ուժեղ ու քաջ՝
Հոր ընկերն է երևի...

— Քեռի, մայրիկն ինձ ուղարկեց...
— Սրա՛ն նայիր, իր առին.
Ապա չքվի՛ր. — քեռին սաստեց, —
Ո՞ւր ես ելել էս ցրտին.



Նկ. Ա. ԲԵՔԱՐՅԱՆԻ



Նայեց Օլգան մտամոլոր,
Մեծավարի նեղացավ.
— Թո՛ղ, — ասաց նա, արագ քայլով
Մի սանդուղք էլ բարձրացավ:

— Դե, փոքրիկս, գլուխ չունեմ...
— Ունե՛ս, — Օլգան համառեց.
Զինվորն էստեղ ուզեր-չուզեր,
Ամբողջ սրտով ծիծաղեց...

2

Այդ ժամանակ վերին հարկից
Մի մարդ արագ իջավ վար.
Տեսավ կանգնած երեխային,
Ժպտաց նրան հայրաբար...

Ու մոտեցավ, ուրախ գրկեց,
Կրծքին սեղմեց փոքրիկին.
Օլգան աչքերն արագ թարթեց,
Մի լավ նայեց պապիկին...

— Որտե՞ղ է քո հայրն աշխատում, —
Հարցրեց պապիկն աղջկան.
— Նավաստի է Կրոնշտադտում,
Չե՞ք ճանաչում դուք նրան:

Նեղվեց պապին. ա՛յ քեզ պատիժ,
Ա՛յ քեզ ճոտիկ հարցասեր.
Ո՞վ է հայրը... մի նավաստի...
Չէր ճանաչում, ի՞նչ ասեր...

3

Մինչ խորհում էր պապիկն հուզված,
Հանկարծ մի խումբ զինվորներ՝
Թևին կարմիր կտոր կապած,
Արագաքայլ ելան վեր...

Բարձրահասակ մի նավաստի
Առաջ եկավ և զգաստ
Պատվի առավ այն պապիկին
Եվ լուռ... ժպտաց աղջկան:

Ու մինչդեռ նա գեկուցում էր՝
Զապած կարոտն իր խորին,
Օլգան պարզեց թաթիկները
Ու փաթաթվեց զինվորին:

— Դե, ինա՛րկե, ճանաչում եմ, —
Ժպտաց պապիկն ու ասաց.—
Իվան Փոմիչ, ձեր աղջիկը
Հետախույզ է գերազանց:

— Ընկե՛ր Լենին... Օլգա, նայիր...
Զինվորն այնպես շփոթվեց,
Իսկ աղջիկը մեծավարի
Ձեռքը Լենինին պարզեց:

— Ծանոթանանք, փոքրիկ կտրիճ, —
Ժպտաց պապին սիրալիր.—
Հանդիպել ես, ուրեմն, էլ ի՞նչ,
Տուն տար հոգնած զինվորին:

— Ընկեր Լենին... ռազմաճակատ.
— Մեկ շաբաթով հանգստի.
Կարոտել է փոքրիկ Օլգան,
Հարցենք, ընկեր նավաստի:

— Զարաճճի, ա՛յ անիրավ,
Եվ ո՞վ է դուրս թողել քեզ.
Բարկանում է հայրը նրա,
Համաձայնում առերես:

— Սպասեցեք, — Լենինն ասաց.
Եվ մոտեցավ նավաստուն, —
— Մեքենայով պիտի գնալ,
...ու. ժամ առաջ հասեք տուն...

— Շնորհակալ եմ, ընկեր Լենին.
— Ե՛ս էլ. Օլգան մեջ ընկավ:
Լուռ մոտեցավ Լենին պապին
Ու համբուրեց աղջկան:

Ապա գնաց սանդուղքն ի վեր,
Տխրեց Օլգան նոր գրկում.
Ա՜խ, կուզենար Լենինին էլ
Հոր հետ մեկտեղ տանել տուն...

* * *

Տարիներ են եկել-անցել.
Լենինգրադ քաղաքում
Օդաչու է Օլգան դարձել,
Սավառնում է ու երգում,
Պատմում է նա հուշն այս անմեռ,
Հպարտ պատմում ամենքին,
Թե ինչպես, երբ փոքրիկ էր դեռ,
Տեսավ Լենին պապիկին...



# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ առաջին օրերին

Վ. ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի առաջին օրերն են: Պետրոգրադը ալեկոծվել է: Բոլորը ինչ-որ բանի են սպասում: Սմոլնին եռում է մարդկանցով:

Այստեղ՝ Սմոլնիում, տեղավորվել էր բոլշևիկների գլխավոր շտաբը՝ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն: Սմոլնիում էր գտնվում նաև Վլադիմիր Իլյիչը: Նա սիրալիր բարևում էր անցուդարձ անողներին, հարցուփորձ անում օրվա բոլոր իրադարձություններից և ամենից շատ այն մասին, թե ինչ է կատարվում այնտեղ՝ Ձմեռային պալատի մոտ ու նրա մատույցներում:

Սմոլնիում Վլադիմիր Իլյիչի գտնվելու լուրը արագ տարածվեց բոլշևիկների շրջանում: Շատերն էին ցանկանում տեսնել նրան և գալիս էին այստեղ: Սկսեցին երևալ նաև կողմնակի մարդիկ: Վլադիմիր Իլյիչի սենյակն էին ուզում ընկնել հատկապես տարբեր տեսակի թերթերի թղթակիցները, այդ թվում նաև արտասահմանյան: Ըստ երևույթին, նրանք նկատել էին, որ հատկապես այստեղ է շատ ժողովուրդ գալիս և գլխի էին ընկել, որ Սմոլնիում է գործում ապստամբության ղեկավար կենտրոնը:

Անհրաժեշտ էր հուսալի պահակություն սահմանել:

Սմոլնիի սենյակներից մեկում տեղավորվել էր ավելի քան հինգ հարյուր զինված բանվոր: Դրանք կարմիրգվարդիականներն էին:

Որոշվեց պահակության համար նրանցից ընտրել յոթանասունհինգ մարդու:

Երեսուն տարեկանի մոտ մի գեղեցիկ, երիտասարդ բանվոր, որի գլխարկի տակից դուրս էին ընկել ցանցուր մազերը, հանգիստ հրաման է տալիս.



— Շարվի՛ր:

Անմիջապես բոլորը տեղերն են կանգնում: Լուռ են ամենքը. ոչ ձայն, ոչ ծպտուն: Դռների մոտ քարացել են ժամապահները: Հրամանատարը հայտնում է, որ հարկավոր է յոթանասունհինգ մարդ: Նրանք պետք է պատրաստ լինեն ամեն ինչի, նույնիսկ մահվան:

Ամբողջ ջոկատը մի քայլ առաջ եկավ և քարացավ: Հրամանատարը մարդիկ ընտրեց, մի պետ և երկու փոխարինող նշանակեց:

— Մի բան պատահելու դեպքում...—խոժոռ նկատեց նա ու լռեց:

Տեղնուտեղը անցագրեր պատրաստեցինք № 1 անցագիրը տվեցինք Վլադիմիր Իլյիչին:

— Սա ի՞նչ է, անցագի՞ր, ինչի՞ համար է,—հարցրեց Վլադիմիր Իլյիչը:

— Անհրաժեշտ է: Համենայն դեպս... Սմոլնիի համար արդեն պահակություն է ստեղծված: Խնդրում եմ նայեք...

Վլադիմիր Իլյիչը նայեց դռնից և տեսավ զինվորական կանոնավոր շարքով կանգնած ջոկատը:

— Ա՛յ թե կտրիճներ են, հա՛: Հաճելի է նայելը,—հիացմունքով ասաց նա:

Ժամապահներ կանգնեցին մուտքի դռան մոտ և սենյակում: Պետն անմիջապես կապ հաստատեց կենտրոնական ջոկատի հետ:

Ժողովուրդը գալիս էր, հա գալիս:

* * *

Վլադիմիր Իլյիչը շատ էր հուզված. Ձմեռային պալատի պաշարումը ձգձգվում էր, պալատում թաքնվել էին ժամանակավոր կառավարության պահապան յունկերները:

Ռևոլյուցիոն զորքին միացած Պավլովյան գվարդիական գնդին հրաման էր տրված գրավել դեպի Ձմեռային պալատ տանող բոլոր փողոցները:

Գունդը դիրքավորվեց պալատի մոտերքում:

Եկան նավաստիները: Առանց կանգ առնելու, նրանք անմիջապես արագ վազքով անցան Դվորցովայա հրապարակը և գրավեցին Ձմեռային պալատի մատույցները: Սկսվեց գրոհը, որը տևեց մի քանի ժամ:

Իրենց հետևից տանելով Պավլովյան գնդի զինվորներին ու կարմիրգվարդիականներին, նավաստիներն ուժգին հարվածով բաց արին պալատի հսկայական դռները և ներխուժեցին շենքը:

Նևայի վրա խարիսխ գցած «Ավրորա» հածանավին վաղուց կարգադրություն էր արված հրանոթներն ուղղել Ձմեռային պալատի վրա: Այդպիսի հրաման էր ստացել նաև Պետրոպավլովյան ամրոցը:

«Ավրորայի» և Պետրոպավլովյան ամրոցի թընդանոթները ազդարարեցին գրոհի սկիզբը: Կարմիրգվարդիականները, նավաստիներն ու զինվորները գրավեցին Ձմեռային պալատի ամենագլխավոր կետերը՝ աստիճանները, մուտքերն ու ելքերը: Հոկտեմբերի 25-ի լույս 26-ի գիշերը Ձմեռային պալատը վերցվեց բոլշևիկյան ռևոլյուցիոն զոր-

քերի կողմից։ Ժամանակավոր կառավարությունը ձերբակալվեց և պահակների հսկողությամբ ուղարկվեց Պետրոպավլովյան ամրոց։ Կերենսկին, կանացի հագուստով ծպտված, գաղտնի ճանապարհով դուրս եկավ Ձմեռային պալատից և փախավ ամերիկյան դեսպանության ավտոմեքենայով։

* * *

Զինվորական արագ քայլերով միջանցքով շտապում է սև կաշվե բաճկոն և նույնպիսի շալվար հագած մի հեծանվորդ-զինվոր։ Նրա ուսից կախ է ընկած ճամփորդական պայուսակը, որ նա բռնել է ձախ ձեռքով։

— Որտե՞ղ է Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի շտաբը,— դիմում է նա դռների մոտ կանգնած երկու ժամապահ կարմիրգվարդիականներին։

— Իսկ դու ո՞ւմ ես ուզում։

— Լենինին։ Զեկույց ունեմ...

Ժամապահներից մեկը շրջվում է և ընկերոջն ասում.

— Այնպես որ, ուղեկցորդ է հարկավոր... Լրաբեր է եկել։ Չունի անցագիր... Շտաբ է ուզում գնալ։ Պահանջում է Լենինին...

Դուրս է գալիս ուղեկցորդը և հարցնում, թե ո՞րտեղից և ում կողմից է եկել լրաբերը։

— Ձմեռային պալատից... Գլխավոր հրամանատար Պոդվոյսկու կողմից։

— Գնանք...

— Զեկույց ունեմ,— ներս մտնելով հարևան սենյակը, ասում է հեծանվորդը։— Լենինն է պետք։

Մոտենում է Վլադիմիր Իլյիչը։

— Ի՞նչ կասեք, ընկեր։

— Լենինը դո՞ւք եք։

Հեծանվորդը հետաքրքրությամբ նայում է Վլադիմիր Իլյիչին. նրա աչքերը ուրախ փայլում են։ Նա արագ բաց է անում պայուսակը, հանում մի թուղթ, խնամքով հանձնում Վլադիմիր Իլյիչին և ձեռքը շքոցին տանելով կարճ զեկուցում.

— Զեկույց է։

— Շնորհակալ եմ, ընկեր,— ասում է Վլադիմիր Իլյիչը և ձեռքը մեկնում նրան։

Սա շփոթված՝ երկու ձեռքով սեղմում է Վլադիմիր Իլյիչի ձեռքը, ժպտում և նորից ձեռքը շքոցին է տանում, ապա զինվորական կարգով կտրուկ շուռ գալով, առույգ քայլերով հեռանում է։

Քայլելիս նա պայուսակի մեջ է դնում այն թուղթը, որի վրա ստորագրել էր Վլադիմիր Իլյիչը։

— «Ձմեռային պալատը վերցված է, Ժամանակավոր կառավարությունը՝ ձերբակալված, Կերենսկին փախել է»,— բարձրաձայն կարդում է Վլադիմիր Իլյիչը։

Եվ հենց նոր էր վերջացրել, երբ կից սենյակում



պոռթկաց կարմիրգվարդիականների հզոր ու երկարատև «ուռան»:

— Ուռա՛,—լսվում էր ամենուրեք:

* * *

Գիշերվա ժամը 4-ին մենք հոգնած, բայց բարձր տրամադրությամբ սկսեցինք ցրվել Սմոլնիից: Ես Վլադիմիր Իլյիչին առաջարկեցի գալ ինձ մոտ գիշերելու: Նախապես ես զանգահարել էի Ռոժդեստվենսկու շրջանը և մարտական դրուժինային հանձնարարություն տվել հետախուզել փողոցները:

Մենք դուրս եկանք Սմոլնիից: Քաղաքը լուսավորված չէր: Նստեցինք ավտոմեքենա և մեկնեցինք մեր տուն:

Վլադիմիր Իլյիչը, ըստ երևույթին, շատ էր հոգնած և մեքենայի մեջ ննջում էր: Տանը մի թեթև ընթրելուց հետո ես աշխատեցի ամեն ինչ տրամադրել Վլադիմիր Իլյիչի հանգստյան համար: Հազիվ հաջողվեց համոզել նրան, որ զբաղեցնի իմ ննջարանը: Դա գտնվում էր մի առանձին փոքրիկ սենյակում, որտեղ նրա տրամադրության տակ էր գրասեղանը, թուղթ, թանաք և գրադարանը: Վլադիմիր Իլյիչը համաձայնեց, և մենք բաժանվեցինք:

Ես պառկեցի կից սենյակում, բազմոցի վրա և որոշեցի քնել միայն այն ժամանակ, երբ լրիվ համոզված կլինեմ, որ Վլադիմիր Իլյիչը արդեն քնած է:

Ավելի ապահով լինելու համար ես գցեցի մուտքի դռան բոլոր շղթաները, փակեցի բոլոր կողպեքները, մարտական պատրաստի վիճակում դրի ատրճանակները, մտածելով, որ կարող են ներխուժել, ձերբակալել, սպանել Վլադիմիր Իլյիչին: Ամեն ինչ կարելի էր սպասել:

Առանձին թղթի վրա անմիջապես գրեցի ընկերներիս, Սմոլնու, շրջանային բանվորական կոմիտեների ու պրոֆմիությունների՝ ինձ հայտնի բոլոր հեռախոսների համարները, «որպեսզի իրարանցման ժամանակ չմոռանամ», մտածում էի ես:

Վլադիմիր Իլյիչն արդեն հանգցրել էր իր սենյակի էլեկտրական լույսը: Ականջ եմ դնում՝ քնա՞ծ է արդյոք: Ոչինչ չի լսվում: Սկսել էի ննջել և քիչ էր մնացել, որ քնեի, երբ հանկարծ շողաց Վլադիմիր Իլյիչի սենյակի լույսը:

Ես լարեցի ուշադրությունս: Լսում եմ, թե ինչպես նա, գրեթե անաղմուկ, վեր կացավ մահճակալից, կամացուկ կիսաբաց արեց դուռը և ապա, համոզվելով, որ ես «քնած» եմ, ոտքի թաթերի վրա անաղմուկ քայլերով, որպեսզի ոչ ոքի չզարթնեցնի, մոտեցավ գրասեղանին: Նստեց գրասեղանի առաջ, բաց արեց թանաքամանը, փռեց ինչ-որ թղթեր և խորասուզվեց աշխատանքի մեջ: Այդ բոլորը ես տեսնում էի կիսաբաց դռնից:

Վլադիմիր Իլյիչը գրում էր, ջնջում, կարդում, քաղվածքներ անում, նորից գրում և, վերջապես, ըստ երևույթին, սկսեց մաքրագրել:

Արդեն լույս էր, սկսում էր բացվել պետրոգրադյան ուշ-աշնանային առավոտը, երբ Վլադիմիր Իլյիչը հանգցրեց լույսը, մտավ անկողին ու քնեց: Քնեցի նաև ես:

Առավոտյան բոլոր տանեցիներին ես խնդրեցի լռություն պահպանել, բացատրելով, որ Վլադիմիր Իլյիչը ամբողջ գիշերն աշխատել է և, անկասկած, շատ է հոգնած:

Հանկարծ բացվեց դուռը, և նա սենյակից դուրս եկավ հագնված, եռանդուն, թարմացած, առույգ, ուրախ և ժպտերես:

— Շնորհավորում եմ սոցիալիստական ռևոլյուցիայի առաջին օրվա առթիվ,—դիմեց նա բոլորիս:

Նրա դեմքի վրա չէր նկատվում հոգնածության ոչ մի նշան, կարծես թե նա հիանալի քնել էր, այնինչ քսանժամյա աշխատանքից հետո նա քնել էր ամենաշատը երկու-երեք ժամ:

Մոտեցան ընկերները: Երբ բոլորը հավաքվեցին թեյելու, և դուրս եկավ Նադեժդա Կոնստանտինովնան, որը մեզ մոտ էր գիշերել, Վլադիմիր Իլյիչը գրպանից հանեց գիշերվա գրած թուղթը և կարդաց հողի մասին իր նշանավոր դեկրետը, որի վրա նա աշխատել էր այդ վճռական օրերին:

Շուտով մենք ոտքով գնացինք Սմոլնի, իսկ հետո նստեցինք տրամվայ: Վլադիմիր Իլյիչի դեմքը ուրախությունից փայլում էր՝ փողոցներում տեսնելով օրինակելի կարգ ու կանոն:

Իմիջիայլոց, Սովետների Համառուսաստանյան երկրորդ համագումարում, խաղաղության մասին դեկրետի ընդունումից հետո, Վլադիմիր Իլյիչը հատուկ պարզությամբ, բարձրաձայն կարդաց հողի մասին դեկրետը, որը հիացմունքով և միաձայն ընդունվեց համագումարի կողմից:





# ՄԻ ԱՆԳԱՄ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 25-ԻՆ...

(Կրճատ)

ԱԿՍԵԼ ԲԱԿՈՒՆՑ

Նկ. Ռ. ԳԱՌԳԱԼՈՅԱՆԻ

Թանձր մութը լցվել էր կամարակապ սենյակը, որ նման էր գետնափորի խուցի: Ճրագը մութի մեջ ավելի աղոտ էր լուսավորում և նրանց, որոնք կռացել էին Պետրոգրադի քարտեզի վրա, ստիպված էին գործածել նաև մոմ և լուցկի, ավելի պարզ տեսնելու փողոցները, կառուցվող բարիկադները, կամուրջները, որ հարկավոր էր ըստ կարիքի բարձրացնել, և վերջապես շենքերը՝ փոստի, հեռագրատան, բանկերի, մինիստրությունների և ժանդարմական զորանոցները, որ պետք էր անհապաղ գրավել:

— Այսօր նորից եմ հիշեցնում Ձեզ կարգապահության,— խոսում ասաց Պոդվոյսկին,— առանց խուճապի, առանց երկյուղի... մենք պիտի բանտարկենք ժամանակավոր կառավարությունը, Կերենսկուն, գլխավոր շտաբը... Պետք է գրավենք Ձմեռային պալատը, այնտեղ են նրանք բոլորը: Պա՞րզ է...

— Պարզ է,— պատասխանեցին այս ու այն կողմից:

— Ընկեր Պոդվոյսկի, գիշերապահները կարո՞ղ են խարույկներ վառել,— հարցրեց մեկը:

— Դու էլ ինչի՞ մասին ես հարցնում,— կշտամբեցին նրան:

— Համբերություն, ընկերներ: Ժամանակը թանկ է: Խարույկ չվառեք, որովհետև տաքանալու համար կրակի մոտ կհավաքվեն զանազան բաղրիններ, իսկ այդ հարկավոր չէ:

Անընդհատ ներս ու դուրս էին անում գնդացրի ժապավեններ կապած և ձեռքի նռնակներով զինված նավաստիներ, բանվորներ, կարմիրգվարդիականներ: Նրանք ծանրախոհ մտնում էին այս և այն սենյակը, որոնք միանման էին, ինչպես խուցեր, և հաղորդում էին լուրեր, ստանում հրամաններ և գնում: Բակում անընդհատ աղմկում էին մոտոցիկլետներ, ավտոներ, սուրհանդակների ձիերը դոփում էին փողոցներում:

Գալիս էին զորամասերի պատվիրակները, որոնք հայտնում էին իրենց կամքը՝ կռվելու ապստամբող բանվորների հետ կողք-կողքի: Ոմանք միայն չեզոքություն էին խոստանում: Նրանք հեռանում էին ընկճված և իրենց հետ գնդի զորանոցներն էին տանում լուրեր ապստամբության մասին: Երբեմն գիշերային հեռախոսազանգերը անհեթեթություններ էին



բերում քաղաքի շրջակայքում թշնամու կասկածելի զորաշարժերի մասին։

— Ուժեղացնել հսկողությունը կամուրջների վրա... Կարմիրգվարդիականներին ուղարկել երկաթուղու կայանները... Զինաթափել «Աստորիայի» սպաներին։ Դիմադրության դեպքում անխնա եղեք։ Ընկեր Մոկշին, ստուգեցեք ժամանակը։

— Տասնմեկից տասը պակաս։

Եվ երկուսն էլ նայեցին ժամացույցներին։

— Տասներկուսին ինձ զեկուցեք, որ «Աստորիան» մեզ այլևս չի խանգարի։ Շտա՛պ։

Խավար միջանցքների քարերի վրա լսվեց սապոգների միատարր ձայն, ապա աղմկեցին երեք բեռնատար մեքենա, և զինված նավաստիների խմբերը սլացան դեպի «Աստորիա»։

— Ուրեմն օղակել Նևայից մինչև Մարսյան դաշտը, ապա Մոյկայից մինչև Մարինսկի պալատը։ Հրետանին խփում է պալատի հրապարակի ուղղությամբ։ Գրեցի՞ր, Վասյա... Հետո գրահապատները...

Բայց հանկարծ ներս մտավ մեկը, որին երկու ժամ առաջ ուղարկել էին շտապ հանձնարարությամբ։

— Նրանք փակեցին դարբասները... Բայց պատուհանների վրա գնդացիրներ կան։ Սպասում են կազակների երկու էսկադրոնի։

— Փակել Միլիոննի փողոցը և Նևայի գետափը մինչև կամուրջը։ Դադարեցնել տրամվայների երթևեկությունն այդ փողոցներով։ Զինաթափել էսկադրոնները, եթե մոտենան կամուրջին։ Ովքե՞ր են «Ավրորայի» հետ կապ պահպանողները։

— Ներկա են,— ոտքի ելան երեք երիտասարդ և մի ծեր նավաստի՝ Ստեփան Բորզան։

— Կրեյսերը մոտեցնել կամրջին... Հետևել ազդանշանին և անհապաղ կրակել Ձմեռային պալատի կողմը։ Քսան նավաստի ուղարկել ընկեր Անտոնովին՝ պալատի վրա արշավելու...

— Есть,— ասաց Բորզան, առաջին անգամ՝ առանց կապիտանի։ Դռան մոտ մեկն արագ նշանակեց նրանց ազգանունները և տրված հանձնարարությունը։

Մթին պալատների առջևով անխոս գնում էին չորս նավաստի։ Ցուրտ էր. ծովից փչում էր խոնավ ու սառը քամի. փողոցներում հատ ու կենտ լապտերներն օրորվում էին, և նրանց հետ օրորվում էին տների մութ ստվերները։ Կողպված էին դարբասները, պատուհանների փեղկերը, և ձայն չէր լսվում բարձր հարկերից։ Երբեմն նրանք հանդիպում էին զինված գիշերապահների, որոնք նշանաբանից հետո թողնում էին նրանց։

Փոթորկվել էր ծովը։ Վիթխարի ալիքները արշավում էին Նևայի հոսանքին հակառակ, գետն ուռչում էր, խփում ափերի գրանիտին։ «Ավրորան» բոլոր լույսերը հանգցրել և զգույշ լողում էր դեպի արքայական կամուրջը։ Միաժամանակ նավաստիները մթնում հանում էին թնդանոթների պղնձե երախակալները և նրանց պողպատյա փողերը դարձնում դեպի Ձմեռային պալատը...

* * *

Առաջին գրահապատները գրոհեցին Սենատի հրապարակից։ Նույն ժամին, տաճարի առաջ դաշտային հրետանին հրաման ստացավ կարճ ճանապարհով միանալ պուտիլովցիների զորամասերին։ Ապստամբ զինվորների զորասյուներն արշավում էին



Մանեժի և ինժեներական դղյակի կողմից։ Կարմիրգվարդիականները Ալեքսանդրյան այգում գնդակոծում էին Ձմեռային պալատի դարպասները։

Պալատի ներսից և հարևան շենքերի կտուրներից գնդացրային կրակով պատասխանում էին յունկերները։ Գնդակները շառաչով դիպչում էին ցուցանակների թիթեղներին, մայթի քարերին և սուլոցով փշրում հաստ ապակիները։

Վախեցած քաղքենիները փակել էին դուռ ու լուսամուտ, նրանց հետևը շարել բարձեր, սեղաններ, գրքեր։ Եվ դողում էին ահավոր երկյուղից. դողում էին, անիծում և աղոթում։

Մոտ երեք-չորս հարյուր հոգու մի բազմություն սպիտակ դրոշը բռնած մոտեցավ կարմիրգվարդիականների դիրքերին։

— Կանգնեցե՛ք,— և զրահավոր մեքենան դանդաղ մոտեցավ։

— Ճանապա՛րհ,— բազմությունից բղավեցին մի քանիսը։ Նրանց մեջ կանացի մի ձայն կանչեց ամենից բարձր.

— Մենք Պետրոգրադի Դումայի և հասարակական հաստատությունների ներկայացուցիչներն ենք և գնում ենք խնդրելու ժամանակավոր կառավարությանը, որ դադարեցնի այս արյունահեղությունը։

— Չկա՛ ժամանակավոր կառավարություն, նա տապալված է։ Կա՛ հեղափոխություն...

— Ճանապարհ տվեք մեզ։

— Հեռացեք կամուրջից, թե չէ կրակում եմ։

— Ախպարներ, հայրենիքի դավաճաններ,— հիստերիկ ճիչով բղավեց այն կինը, որ կոմսուհի Պանինան էր...

— Հեռացե՛ք կամուրջից,— և գնդացիրը կրակեց օդի մեջ։

— Հեռանանք, պարոններ... Տեղի տանք բռնության ուժին և աղոթենք աստծուն մայր Ռուսիայի փրկության համար,— երկյուղած ձայնով ասաց դավանության մինիստր Կարտաշևը։

Բազմությունը ետ նահանջեց։

— Կանգնի՛ր,— բղավեց երիտասարդ պահակը և ուղղեց հրացանը։ Մի ավտո կանգնեց։

— Իջեք ցա՛ծ...

— Սա ի՞նչ անկարգություն է,— վայրացավ ավտոյի մեջ նստած պորտֆելով մարդը։

— Դուք պետք է ոտքով գնաք Սմոլնի,— հանդարտ պատասխանեց պահակը։— Իսկ մեքենան կմնա...

— Գիտե՞ք ես ով եմ,— ձայնը բարձրացրեց նա,— ես մինիստր Պրոկոպովիչն եմ... Ինչպե՞ս եք համարձակվում ձեռք բարձրացնել կառավարության անդամի վրա։ Սա անկարգություն է։ Ձեր ազգանո՞ւնը, պարոն,— և գրպանից հանեց բլոկ-նոտը։

— Գնացեք Սմոլնի, այնտեղ ձեզ կասեն...

Եվ մինիստր Պրոկոպովիչը, որպես կալանավոր, ոտքով գնաց Սմոլնի։

Ժամը երեքից անց բոլոր զորամասերը հրաման ստացան.

— Ուժեղացրեք գրոհը, գրավեցեք պալատը... Շուտով Իլյիչը ելույթ կունենա Խորհրդում։ Բանտարկվածներին և գերիներին ուղարկել Սմոլնի։ Ձմեռային պալատը գրավող առաջին կոմիսարին հրամայում եմ անմիջապես ներսը սահմանել խիստ կարգ և առանց խուզարկության ոչ ոքի դուրս չթողնել։

Հրամանից հինգ րոպե հետո հանկարծ որոտացին

«Ավրորայի» թնդանոթները՝ մե՛կ, երկո՛ւ, ապա որոտացին Պետրոպավլովկայի կողմից: Դաշտային հրետանին, որ արդեն մնացել էր պատուհաններին, հրապարակից զարկեց արքաների ձմեռային տան դարպասներին: Լսվեց մի հուժկու ուռա և բոլոր փողոցներից արշավեց զինված բազմությունը:

Ձմեռային պալատում գնդացիրները լռեցին:

Նավաստիների և կարմիրգվարդիականների մի զորասյուն խիզախ գրոհով մտավ բակը և ամբոխը պատրաստ՝ բարձրացավ մարմարյա սանդուղքներով: Առաջին գրոհայինների մեջ էին «Ավրորայից» տասնյակ նավաստի, որոնց թվում ծերունի Ստեփան Բարզան:

Գրոհողները մեծ եռանդով փնտրում էին Կերենսկուն: Արդեն բանտարկել էին ժամանակավոր կառավարության անդամներին, զինաթափ էին արել յունկերներին և շարքի էին կանգնեցնում նրանց պալատից դուրս տանելու, սակայն բանվորների և նավաստիների առանձին խմբեր Ձմեռային պալատի բազմաթիվ սենյակներում և ներքնահարկում դեռևս փնտրում էին անիծված «Բոնապարտին»:

Մեկը հանկարծ ներքևից կանչեց.

— Բռնել ենք, բռնել ենք...

Մի քանի նավաստիներ Ստեփան Բարզայի հետ միասին ներքնահարկի մութ միջանցքում բանտարկել էին երկու հոգու՝ սև վերարկուների մեջ փաթաթված, և ողորմելի գոռում էին, դղրդացնելով կամարները:

Կոմիսարը նրանցից վկայական պահանջեց:

Ծերունի նավաստու սուր աչքը սև վերարկուի տակ տեսավ էպոլետի ոսկե երիզը: Նա ետ քաշեց վերարկուի օձիքը: Նույն րոպեին կոմիսարը կարդաց նրա վկայականը.

— Գեներալ-մայոր Բագրատունի, Պետրոգրադի մարզի շտաբի պետ...

Ստեփան Բարզան պոկեց գեներալի բրաունինգը և ոսկեզօծ էպոլետները.

Իսկ դրսում, Ձմեռային պալատի բակում, լսվում էր հոմերական բրբիջ: Հռհռում էր զինված բազմությունը, ծիծաղում էին և սպառնում:

Զինաթափ էին արել Կերենսկու վերջին հույսը՝ կանանց բատալիոնը:

* * *

Պետրոգրադի Խորհրդի նիստի ժամանակ անսպասելի կերպով ներս մտավ գորշ վերարկուով մի մարդ: Նա մի վայրկյան նայեց ոգևորությունից հուզված պատգամավորների բազմությանը, որոնց վրա թանձր ծուխ ծփում էր, և օրորվում էին ջահերի ոսկե ժանյակները: Գորշ վերարկուով մարդը նայեց մի վայրկյան, ապա հաստատ քայլերով մոտեցավ ամբիոնին:

Դահլիճում աղմուկը դադարեց:

— Ընկերնե՛ր,—գրնգաց նրա ձայնը,—բանվորական և գյուղացիական հեղափոխությունը, որի անհրաժեշտության մասին ասում էին բոլշևիկները, կատարվեց... Ճնշված մասսաներն իրենք են ստեղծում իրենց իշխանությունը... Այսօրվանից սկսվում է պատմության մի նոր շրջան...

Դահլիճը դղրդաց ձայների որոտից և նույն րոպեին Ծովային շտաբի գավթից, «Ավրորա» կրեյսերից և Պետրոպավլովկայի հենակետերից ողջունեցին թնդանոթները, գործարանների հազարավոր սուլիչներն անընդհատ արձագանքեցին, և արձագանքը, որպես նոր պատգամ, սլացավ քաղաքից քաղաք, աշխարհից աշխարհ...

Այսօրվանից ամբողջ իշխանությունը պատկանում է բանվորների, զինվորների և գյուղացիների խորհուրդներին...

Խոսում էր Լենինը:



# Աշխատողի ճրագը




Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

(Հայկական ժողովրդական հեքիաթ)

Նիկոլ ցարն աշխարհը կրակ գցել, մի խուրձ խոտի պես կվառեր, ձեն հանող չկար։

Օրվան մեկ օր նա իր նազիր-վեզիրների հետ նստել, խաս բախչի մեջ ման կգար։ Մի ջահել, բեղը նոր ծլած տղա թռավ նրա երեսը, ասավ.

— Քու արյունդ պիտի թափեմ, քու վառած կրակը մարեմ։

Ասավ, մեկ ռումբ գցեց, դե արի, որ ռումբը հեռու ընկավ, տրաքեց, մուխն ելավ, գումանն բռնեց։ Վեզիր-նազիրները տղին բռնեցին, բերին, կանգնեցրին թագավորի առաջ։ Թագավորն հարցրեց.

— Դու որ կուզես իմ արյունը թափել, ո՞ւմ տղան ես, քու անունդ ի՞նչ է։

Ասավ.

— Անունս Ալեքսան է, իմ հերը պստիկ ախպորս հետ Սիմբիրու[1] քաղաքի մեջ կապրի, կարող է՝ ճանաչես։

Թագավորը նրան կախել տվեց, կանչեց զորքի մեծավորին, հրամայեց.

— Գնա՛, Սիմբիրու քաղաքն ավերի, տեղը բոստան ցանի, էս տղի հոր գերդաստանն էլ փրթի, արի։

Ղուշը լուրը Սիմբիրու քաղաք հասցրեց, Ալեքսանի հորն ասավ.

— Փախի, թագավորը կատաղել, մեծ զորք ա ուղարկել, որ ձեր քաղաքն ավերեն, ձեր գերդաստանը կոտրեն։

Մի աղքատ մարդ էր Ալեքսանի հայրը։

Էս լուրը որ առավ, էլ ժամանակ չկորցրեց, վերցրեց գերդաստանն ու ղարիբութեուն, ո՞րտեղ ես, եկա։ Յոթն օր, յոթը գիշեր ճամփա գնացին, վրա ութին մի վայրի անտառի դեմ առան։ Էդ ժամանակ Ալեքսանի պստիկ ախպերը երկու տարեկան հազիվ լիներ։ Կանգնեցին մարդ ու կնիկ, ասին.— Մեր տեղն էս է։— Բերեցին մի պստիկ տուն շինեցին ու մտան մեջը։

Հայրը որսորդութեուն կաներ, մայրը բանջարմանջար կքաղեր, լոխ կերթային։ Տղան էլ իրա համար կմեծանար։

— Վնաս չունի, կնիկ, մեր տղան ասլանի ուժ կունենա, կերթա, ախպոր վրեժը կառնի։

Հեքիաթի տղա էր, ով որ տարով կմեծանար, նա՝ օրերով։ Երբ որ մեծացավ, խելքը բան կտրեց, հայրը նրան որսորդութեան կտաներ, կպատմեր աշխարհքի կարգն ու սարքը, բարին ու չարը։ Մի օր էլ Ալեքսանի պատմութեունն արավ։ Տղի սիրտը մրմռաց։ Լացեց ախպոր համար, վերջը կանգնեց, ասավ.

— Ես կերթամ,— ասավ,— աշխարհը ման գամ, չարն ու բարին տեսնեմ, իմ ախպոր վրեժն առնեմ թագավորից։ Գնա՛ց։ Գնաց, մի գեղ մտավ, տեսավ՝ երթիկներից մուխ չի ելնի։

Հարցրեց.

— Էս ի՞նչ բան է, ախպերներ։

Ասին.

— Թագավորը մեր մուխը կտրել է, մեր թոնիրները սառեցրել։

Գնաց մեկ ուրիշ գեղ. տեսավ՝ արտերը չորացել, գետնին են կպել։

---

[1] Սիմբիրսկ



Հարցրեց.

— Էս արտերին ինչի՞ ջուր չեք տա, ախպերներ։

Ասին.

— Մեր արտերի ջուրը Թագավորն առել, տվել է հարուստին։

Մեկ ուրիշ գեղ գնաց, տեսավ՝ էլի էն։ Աշխարհքը ոտքի տակն առավ, տեսավ՝ էլի էն։ Ինքն իրեն միտք արավ, ասավ.

— Հեյ վա՜խ,— ասավ,— էս ի՞նչ օրենք է, դատողը դատի, չդատողն ուտի։ Չէ՛, ասավ, ես պիտի էս կարգ ու սարքը փոխեմ։

Գնաց, մի քանի կտրիճ ընկերներ ճարեց, ուղարկեց տերության չորս կողմը, որ ամեն կողմը զորք կապեն, գան Թագավորի վրա, կռիվ անեն, իրենց իրավունքը խլեն։

Լուրը տարան Թագավորին, ասին.— Բա չես ասի, էսպես, էսպես մի տղա զորք է կապել, որ քեզ հետ կռվի, բու հող ու ջուրն առնի, տա չլուտ-չփլախներին։

— Հա՛յ հա՜յ,— կանչեց Թագավորը,— էդ ի՞նչ տեսակ տղա պիտի լինի, որ էդպես միտք ունենա.

Ասին.

— Էդ են կախածդ Ալեքսանի ախպերն է, Սիմբիրու քաղաքից է, անունը՝ Լենին։

Թագավորը գույնը գցեց։ Վերջը մի թուղթ գրեց,

*ուղարկեց Լենինին։ Գրել էր. «Լենին, դու ջահել ես, արի, էդ բառը գցիր թափի, գլուխդ քեզ կբաշխեմ»։ Լենինը կարդաց, մի գիր էլ ինքը ուղարկեց թագավորին. «Ուրիշ բան չգիտեմ, կռիվս՝ կռիվ է։ Արի զարկենք, զարկվենք»։*

*Թագավորն էս անգամ մի զունդ զինվոր ուղարկեց մի գեներալի հետ, որ նրան բռնեն, բերեն։ Բայց ինչ Լենինն էր, ասլան բալա էր, ելավ գնդի առաջ, զինվորներին բան չարավ, գեներալին բռնեց, աստղները ՞քաշեց, ետ դարձրեց։*

*Ահ ու դողն ընկավ թագավորի սիրտը։ Ինչքան զորք ուներ, ոտի հանեց։ Ուրիշ տերություններ էլ թափվեցին — եկան նրան միացան։*

*Մի սոսկալի կռիվ եղավ։ Արար-աշխարհ երկու մասի բաժանվեց։ Մի կողմ թագավորը, աղաները, խան ու սուլթան, մեկել կողմը՝ Լենինը, բանվորները ու գյուղացիները։*

*Զարկեցին իրար։ Հե՜յ, մատաղ եմ քեզ, ասլան բալա Լենին, ասլանի պես կկռվեր, կրծքով կբացեր իր զորքի ճամփան, կերթար առաջ։*

*Քառասուն օր ու գիշեր կռիվ եղավ։ Լենինի զորքը վերցրեց Պետրապոլ[1]) քաղաքը, վերցրեց տերության ամբողջ հողն ու ջուրը։ Թագավորի գլուխը զարկեցին, արին շների բաժին։*

*Աշխարհքի մեջ խաղաղություն ընկավ։*

*Հողն ու ջուրը տվին գյուղացուն, գործարանները, հանքերը բանվորներին։ Նրանց աչքը լիացավ։ Աշխարհը հասավ իր մուրազին։*

[1] Պետերբուրգ



Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Վոլգայի ձախափնյա մարգագետիններում, գետախորշի մոտ խփված են պիոներական ճամբարի վրանները։ Երեխաները կանաչների մեջ, կոլեկցիաների համար թիթեռներ են բռնում, ծաղիկներից ու տերևներից հերբարիումներ պատրաստում. Իսկ ինչքա՜ն ձկներ կան գետախորշում՝ գայլաձուկ, բրամ, ծածան... հիանալի է Վոլգայի ափին։ Երեխաները լողանում են ու թավալվում շիկավուն ու տաք ավազին։ Երեկոները բոցկլտացող խարույկի շուրջը նրանք պարում ու երգում են, հետաքրքիր զրույցներ լսում։ Երբեմն էլ էքսկուրսիա են գնում մոտակա կոլխոզը կամ մեքենատրակտորային կայանը, ուր այնքան հետաքրքիր բաներ կան՝ կոմբայններ ու կալսիչներ, տրակտորներ ու զանազան այլ գործիքներ։ Ահա այս բոլորի հետ ծանոթանալուց հետո, էքսկուրսիայի եկած մի ջոկատ մտավ մեքենատրակտորային կայանի արհեստանոցը, որտեղ բանվորները նորոգում էին գյուղատնտեսական գործիքների մասերը։ Երեխաների ուշադրությունը գրավեց մետաղ ծակող հաստոցը, մի զարմանալի հաստոց, որ երկաթե դետալն այնպիսի հեշտությամբ է ծակում, կարծես դա իսկի էլ երկաթ չէ։

— Տեսեք, — ասաց տղաներից մեկը, — ոնց է ծակում, կարծես



Իր լավ աշխատանքով գործարանում աչքի է ընկնում Սեդրակ Սահակյանը:

պանրի վրա է անցք բացում:

Իսկ հետաքրքրասեր Վոլյան, որ բլոկնոտն ու մատիտը միշտ ձեռքին էր ման գալիս, մոտեցավ հաստոցին և նրա վրայի մետաղե պիտակին նայելով, ինչ-որ բան գրեց բլոկնոտում:

—Այդ ի՞նչ ես գրում,—ձայնեցին մյուս տղաները,—սովորական ծակող մեքենա է, է՜լի:

Բայց Վոլյան մտահոգված աշխատում է ինչ-որ բան հիշել:

—Գիտե՞ք, տղաներ. ես ինչ-որ տեղ այս քաղաքի անունը կարդացել եմ, թե որտե՞ղ՝ չեմ հիշում:

Բայց ուղեկցողը երեխաներին կանչեց մի այլ հաստոցի մոտ և խոսակցությունն այդպես էլ չավարտվեց:

Էքսկուրսիան շատ հետաքրքիր անցավ: Երեխաները գոհ էին: Եվ երբ հոգնած ու քաղցած նրանք ճամբար հասան, արդեն ճաշի զանգը տվել էր: Երեխաները սկսեցին ախորժակով ճաշել, և դեռ նոր էին նրանք ստացել երրորդ ամենահամեղ բաժինը՝ դեղձի կոմպոտը, երբ Վոլյան բլոկնոտը գրպանից հանելով, բացականչեց.

—Ես ասում էի, չէ՞, որ այս անունը ինձ ծանոթ է:

Բոլորը հետաքրքրվեցին:

—Ի՞նչ անուն, ի՞նչ է պատահել:

—Հիշո՞ւմ եք այն ծակող հաստոցը: Ա՛յ, ես այստեղ գրել եմ՝ «Պատրաստված է Հոկտեմբերյան քաղաքում»: Դե այստեղ նայեք, սա էլ է Հոկտեմբերյան քաղաքում պատրաստված:

Եվ նա տղաներին ցույց տվեց դեղձի կոմպոտի դատարկ տուփը, որի վրայի պիտակի մի անկյունում մանր տառերով գրված էր. «Քաղաք Հոկտեմբերյան»:

—Իսկ որտե՞ղ է այդ Հոկտեմբերյանը,—հարցրեց փոքրիկ Միշան:

—Իսկապես որտե՞ղ է,—հետաքրքրվեցին մյուսները:

Բոլորը նայեցին Վոլյային: Նա որ չիմանա, էլ ո՞վ կիմանա: Բայց Վոլյան էլ ուսերը թոթվեց.

—Ա՛յ, ես էլ գիտեմ, որ հարցնեմ: Եկեք հարցնենք ճանկավարժին:

* * *

Հոկտեմբերյան քաղաքը Արարատյան դաշտում է գտնվում, Արարատի դեմ-դիմաց, Արագածի ստորոտում: Գեղեցիկ ու լայն պողոտաներով, գործարաններով ու ճարտարապետական հիանալի կառուցվածքներով քաղաքը ասես մի կանաչ այգի լինի: Ահա ձգվում է ասֆալտապատ փողոցը, որի վերջում Արագածի ֆոնի վրա բարձրանում է նորակառույց ակումբի սյունազարդ, վարդագույն շենքը: Զով պուրակներում մանուկներն են վազվզում:

Փողոցների խաչմերուկներում բխում են ցայտաղբյուրները՝ սառնորակ ջրով: Ջուրը բխում է, շատրվանում: Անցորդներից ոմանք մոտենում են, կանգնում աղբյուրի վրա, սառը ջուր խըմում ու շարունակում իրենց ճամփան, իսկ մաքուր ջուրը շարունակում է նորից հոսել: Փողոցների կողքերով հոսում են առվակները, խոխոջում է ջուրը, իր հանգով երգում, և ոչ ոք ուշադրություն չի դարձնում նրա սովորական երգին:

Բայց հենց այստեղ, այս ցայտաղբյուրի տեղում չէ՞ր արդյոք փոքրիկ գառնարածը այրվում ծարավից ու տապից, այստեղ այս հովասուն պուրակի տեղում չէի՞ն շիկանում քարերը և անապատային ցածրիկ, փշապատ բույսերն անգամ չորանում արևի կիզիչ ճառագայթներից: Այն ե՞րբ է եղել, հարյուր տարի առա՞ջ, թե կլինեն մարդիկ, որ կհիշեն այդ բոլորը:

* * *

Եթե մեկը քառասուն տարվա բացակայությունից հետո վերադառնար այս կողմերը՝ կկորչեր, չէր գտնի իր տան ճամփան: Իսկակա՞ն երկինք կթվար նրան ամեն ինչ: Քառասուն տարի առաջ այստեղ անապատ էր, չոր անապատ, նույնիսկ ուղտաներն ու անասունները, երբ մոտակա գյուղերից գնում էին Ալագյազի կանաչ լանջերը և աշնանը վերադառնում, այս վայրերով անցնելիս արագացնում էին քայլերը: Փուշ ու տատասկ էր փռված շուրջը, գորշ ու շիկավուն քարեր: Երբ գնացքը անցնում էր Սարդարաբադով, միայն մի պահ էր դանդաղեցնում անիվների պտույտը, և ապա կարծես փոշմանելով արագացնում ընթացքը: Սարդարաբադը նույնիսկ լրիվ կայարան էլ չէր, Մոտակա գյուղերի բնակիչները որպեսզի գնացք նստեին, պետք է տասնյակ կի-

լոմետրեր գնային հեռու, մինչև Արաքս: Կայարանն այնտեղ էր, թեև մոտերքում բնակավայրեր չկային:

—Մարդկանց մասին ո՞վ էր մտածում այն ժամանակ,—դառնությամբ ասում է Հոկտեմբերյանի հնագույն բնակիչներից մեկը՝ Սուրեն Ստեփանյանը, որն այժմ Քաղսովետի նախագահ է: Նա լավ է հիշում ամեն ինչ: Անենք շատ էլ ժամանակ չի անցել, շատերն են հիշում քաղաքի ողջ պատմությունը, նույնիսկ երիտասարդները, բայց ընկեր Ստեփանյանը ամենահին բնակիչներից մեկն է:

—Հոկտեմբերի ծնունդն է մեր քաղաքը,—ասում է նա,—այստեղ հնից ոչինչ չկա: Մենք հնից ժառանգեցինք միայն անապատը, փուշն ու տատասկը, որոնց հետ մենք մեր հաշիվը վաղուց ենք մաքրել: Ահա նայեք, և նա ձեռքը մեկնում է դեպի բաց պատուհանը, որտեղից երևում է ամբողջովին կանաչի մեջ ընկղմված նոր քաղաքը: Իսկ հովասուն ծառերի տակով անցնում է պիոներական ջոկատը թմբուկի ու շեփորի ձայնով լցնելով փողոցը: Երեխաները երգում են և նրանց երգը տարածվում է հեռո՜ւ, հեռու: Կարմրափողկապ շարքը անցնում է սաղարթախիտ քաղաքային այգին, դուրս գալիս Հոկտեմբերյանի արևելյան ծայրը: Այստեղ շենքերը կարծես թե ավարտվում են, բայց ո՛չ, քաղաքը դեռ չի վերջանում: Ահա նրանք ելնում են փոքրիկ բարձրության վրա, և երեխաների աչքի առաջ է փռվում սպիտակ ու վարդագույն առանձնատներով գեղեցիկ թաղամասը: Դա Հոկտեմբերյանի պահածոյի գործարանի թաղամասն է: Իսկ գործարանը դեռ չի երևում, պետք է կտրել անցնել կարմրին տվող ծաղկանոցները, սաղարթախիտ ծառուղիները և նոր միայն կերևա գործարանը: Իսկ երեխաները հենց այնտեղ էլ գնում են: Ջոկատավարը, որ ընթանում է շարքի կողքով արդեն մոտենում է Վոլգայի ափի ճամբարի պիոներների նամակի պատասխանը: Պետք է շատ պատասխան ուղարկել. Վովա Գոխտմովը գրել է, թե Հոկտեմբերյանի մասին պետք է պատմեն ճամբարային խարույկի շուրջը: Վովան հատկապես խնդրել է պատմել պահածոյի գործարանի մասին:

* * *

Պահածոյի գործարանի լայն ու լուսավոր ցեխերում երեխաները շատ բան տեսան:

Ահա այստեղ, այս ցեխում մրգերն ու բանջարեղենները նախնական մշակման են ենթարկվում: Խաղողն ու դեղձը, տանձն ու խնձորը լվացվում են և ուղարկվում մյուս ցեխերը: Իսկ այստեղ սպիտակ խալաթներ հագած աղջիկները ապակե տուփերի մեջ են դարսում մաքուր լվացված դեղձը: Այնքա՜ն արագ են աշխատում նրանք և այնքա՜ն լավ է ստացվում նրանց մոտ ամեն ինչ:

Երեխաները հետաքրքրությամբ և մեծ ուշադրությամբ հետևում են բանվորուհիների ճկուն շարժումներին:

Իսկ երբ բոլորը ուղեկցողի հետ անցան մյուս ցեխը, փոքրիկ Արփիկը դեռ մնացել էր կանգնած:

Բանվորուհիներից մեկը հարցրեց.

—Հը՛, աղջիկս, հետաքրքի՞ր է:

—Շա՜տ, շա՜տ հետաքրքիր է:

Հետո նա ավելացրեց,—իսկ ես չե՞մ կարող լցնել:

—Ինչո՞ւ չէ: Ա՛յ, որ դպրոցն ավարտես, արի մեզ մոտ, մենք քեզ համար տեղ կպահենք,—ժպտալով ասաց ցեխի վարպետը:—Կգա՞ս:

Արփիկի աչքերը փայլեցին:

—Իսկ կընդունե՞ք:

—Ինչո՞ւ չէ: Ա՛յ՝ Հեղինեն էլ է միջնակարգն ավարտելուց հետո մեզ մոտ եկել: Հիմա նա գործարանի լավագույն բանվորուհիներից մեկն է: Արաքսյան էլ նրանից պակասը չի: Նա փակում է մուրաբայով լի տուփերի կափարիչները:

Արփիկը նայում է նրա ճկուն շարժումներին ու մտքում որոշում՝ «կգա՛մ»:

* * *

Երեխաները կարծում էին, թե ամեն ինչ տեսել են արդեն,

Միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո Լիդա Գրիգորյանն աշխատանքի ընդունվեց Պահածոյի գործարանում:



բայց ոչ, ահա ուղեկցողը նրանց տանում է պահեստ: Ինչքա՜ն տուփեր կան այստեղ՝ տոմատի ու խաղողի հյութով, դեղձի, սալորի ու ծիրանի կոմպոտով լի: Պահեստի մյուս կողմի դռներին դատարկ վագոններ են կանգնած: Այստեղ բանվորները տուփերով լի արկղները բարձում են վագոնները և ուղարկում Միության տարբեր ծայրերը: Ահա, այս վագոնը գնալու է Ուրալ, իսկ մյուսը՝ Հեռավոր Արևելք, իսկ այն վագոնը, որ արդեն միացված է շոգեքարշին՝ Գորկու մարզ:

Տարեկան 24 միլիոն տուփ պահածո է արտադրում Հոկտեմբերյանի գործարանը: Իսկ արտադրանքի տեսակները շատ են՝ զանազան տեսակի հյութեր և մուրաբաներ, ջեմեր և օշարակներ:

* * *

Արդեն կեսօր էր, երբ ջոկատը դուրս եկավ գործարանից: Երեխաները դեռ պետք է այդ օրը գնային մեխանիկական, ապա բամբակազտիչ գործարան: Դա Հոկտեմբերյանի առաջին գործարանն է, որը 30 տարվա պատմություն ունի:

Ջոկատավարը լրջորեն մտահոգված էր:

Ինչպե՞ս կարելի է մի նամակով ամեն ինչի մասին գրել: Չէ՞ որ դեռ պետք է գրվի 11 միջնակարգ և մասնագիտացված դպրոցների մասին, հիվանդանոցների ու գրադարանների մասին, ակումբների ու կինոթատրոնների մասին:

* * *

Մյուս օրը նամակն արդեն պատրաստ էր: Տղաներն ու աղջիկները իրար գլխի հավաքված նորից կարդում էին գրածը և ավելացումներ անում: Նամակը լավ էր ստացվել: Մնում էր վերնագիր գտնել և ամեն ինչ կավարտեին:

Ջոկատի պատի թերթի խմբագիրը՝ Արամը, լրջորեն նստել էր գրասեղանի առաջ ու գրի էր առնում: Բայց վերնագրի հարցը նրան մտատանջության մեջ գցեց: Իսկապես, ինչպե՞ս վերնագրեին գրածը:

«Այստեղ անապատ է եղել» — ասաց Արփիկը, որ լուռ նստած էր մի անկյունում:

Բոլորը հավանություն տվեցին նրա ասածին:



## 16 ՀԱԶԱՐ ՏՈՆՆԱՆՈՑ ՀԱՍՏՈՑԸ

Ուրալի Օրջոնիկիձեի անվան ծանր մեքենաշինության գործարանը հաճախ կոչում են «գործարանների գործարան»: Այստեղ է պատրաստվում ռելսահեծանային 16 հազար տոննա քաշ ունեցող հսկա հաստոցը: Նրա բոլոր մասերը տեղափոխելու համար պահանջվում է 800 վագոն, իսկ այն ցեխը, որտեղ տեղավորվում է հաստոցը, ձգվում է մոտ մեկ կիլոմետր:

Սա մի հիանալի մեքենա է: Նա աշխատում է առանց մարդու ձեռքերի օգնության: Վեց տոննանոց պողպատե զանգվածը մտնելով հաստոցի մեջ մշակվում է վառարաններում, անցնում է հատուկ մամլիչների արանքից, ձգվում, երկարացվում՝ ընդունելով ռելսի ձև: Ավտոմատիկորեն են կատարվում նաև ռելսերի հղկումը և որակի ստուգումը: Հզոր սղոցները 65-մետրանոց ռելսը բաժանում են հինգ հավասար մասերի: Այս ամբողջ պրոցեսը տևում է 50 վայրկյան: Երբ էլեկտրամագնիսական հուժկու կռունկները ցեխի մյուս ծայրում վագոնների վրա են բարձում այդ պատրաստի ռելսերը, հաստոցի մյուս ծայրում նորից սկսվում է արտադրության պրոցեսը: Մարդկային ձեռքերն ու աչքերն ի վիճակի չեն հետևել նրան, ամեն ինչ կատարվում է վայրկյանական արագությամբ: Սակայն հաստոցն աշխատում է անխափան, առանց սխալներ գործելու՝ նրան հետևում են զգայուն գործիքներն ու ավտոմատները:



Վ. Ի. ԼԵՆԻՆ

Նկ. Վ. Գ. ՑԻՊԼԱԿՈՎԻ



ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՕՐԵՐԸ

Նկ. Գ. Կ. ՍԱՎԻՑԿՈՒ



11-ՐԴ ԲԱՆԱԿԻ ՄՈՒՏՔԸ ԵՐԵՎԱՆ

Նկ. Ա. ԲԵՔԱՐՅԱՆԻ



ՍՊԱՍՈՒՄ ԵՆ ԱԶԴԱՆՇԱՆԻ։ ԳՐՈՀԻՑ ԱՌԱՋ։

Նկ. Վ. Ա. ՍԵՐՈՎԻ



# ԼԱՈ-ՀՈ

ՎԱՀԱՆ ԹՈԹՈՎԵՆՑ

Փոքրիկ Լաո-Հոն ուշադրությամբ լսում էր իր հոր և նրա ընկերների սուր վիճաբանությունը։

Հայրը նրան պատվիրել էր գնալ բակը և խաղալ մի փոքրիկ կտոր մարգագետնի վրա, և նա վստահ էր, որ Լաո-Հոն գնացել է և իրեն չի լսում։

Բայց Լաո-Հոն չափազանց հետաքրքրված էր իր հոր և նրա ընկերների խորհրդավոր հավաքույթով։ Նրանք հաճախ էին հավաքվում իրենց տանը և խոսում, վիճում, հայհոյում, գայրանում, հետո համաձայնության գալիս ու բաժանվում։

Երբ հայրը պատվիրեց Լաո-Հոյին դուրս գնալ և խաղալ, նա գնաց, բայց գաղտագողի վերադարձավ, կծկվեց սենյակի անկյունում, սկսեց ուշի-ուշով լսել իր հոր և նրա ընկերների խոսակցությունը։

Սենյակը կիսամութ էր և նրանք չնշմարեցին Լաո-Հոյի նշաձև աչքերի բոցը, որ վառվում էր սենյակի մթին անկյունում։

Փոքրիկ Լաո-Հոյի աչքերի հուրը գնալով ավելի էր բոցավառվում ներքին անասհման հետաքրքրությունից դեպի իր հոր և նրա ընկերների խոսակցությունը։

Լաո-Հոյի հայրը և նրա ընկերները չինացի բանվորներ էին, որոնք աշխատում էին Չինաստանի իրենց շրջանում գտնված անգլիական ածխի հանքերում։

Ամեն անգամ, երբ բանվորները խոսում էին անգլիացիների մասին՝ փոքրիկ Լաո-Հոն սարսափով էր լցվում։ Նա անգլիացիներին լավ էր ճանաչում։

Սենյակի մթին անկյունում կծկված՝ նրա սարսափը, ներքին խռովությունն ավելի սաստկացավ, որովհետև իր հայրը և նրա ընկերները պատմում էին, որ անգլիացիները կարող են իրենց կախ տալ առանց դատարանի, առանց վկաների։

Փոքրիկ Լաո-Հոն իր աչքերով էր տեսել, թե ինչպես է անգլիական հանքերի մի վերակացու մտրակով ծեծում իր հորը և նրա ընկերներին։ Մտրակի հարվածները շաչում էին հոր ու նրա ընկերների մերկ թևերի և ուսերի վրա։

Երբ օրեկան-խաշած բրինձ պակասում էր Լաո-Հոյի, իր քույրերի և եղբայրների համար՝ հայրը անգլիացիներին էր անիծում։

Անգլիացիներն էին ամեն թշվառության պատճառ, նրանք էին, որ կիսաքաղց էին պահում իրենց և հարևաններին։

Լաո-Հոն խորապես հասկանում էր իր հոր անեծքը և լցվում էր ատելությամբ դեպի անգլիացիները, այդ երկարահասակ, մռայլ, փոքրիկ, կապույտ աչքերով մարդիկ, որ եկել էին օտար երկրից իրենց տանջելու։

Լաո-Հոն սարսափում էր անգլիացիներից և միաժամանակ ատամներն էր կրճտացնում ամեն անգամ, երբ տեսնում էր նրանց։

Երբ փողոցում տեսնում էր նրանց, սարսափահար աչքերը չռում էր նրանց վրա. որքան նայում էր, ավելի էր սարսափում, բայց ի վերջո սարսափը փոխվում էր բարկության, որ ծնունդ էր առնում նրա փոքրիկ սրտում, մեծանում և ընդգրկում ամբողջ մարմինը։ Այդ փոքրիկ, թռչունի պես վախլուկ երեխան ուզում էր նետվել մեկն ու մեկի երեսին և չանգռել։

Այժմ հայրը և նրա ընկերները պատմում էին անգլիացիների մասին, պատմում էին նրանց դաժանությունների մասին։

Լաո-Հոն լսում էր բոցավառ, ատելությամբ բոցավառ աչքերով, կիսապույս սենյակի մութ անկյունից։

Ապա խոսակցությունը փոխվեց։ Նրանք խոսում էին զորավարի մասին։





Մի քանի օր էր, որ Լաո-Հոյի հայրը ածխահանք չէր գնացել։ Չէին գնացել և նրա բանվոր ընկերները։

— Ուրեմն գործադուլը դա էր,— մտածեց Լաո-Հոն։

Անգլիական ածխահանքի բանվորները գործադուլ էին արել։ Այդ օրերին Լաո-Հոյի ընտանիքի և հարևանների դրությունն ավելի վատթարացավ։ Խաշած բրինձ ոչ թե պակասում էր, այլ բոլորովին չկար։

Լաո-Հոն ականջը սրեց։ Գործադուլավոր բանվորները խոսում էին, որ անգլիացիները ոստիկաններ էին բերել գործադուլավորներին բռնի դեպի ածխահանքերը քշելու համար։ Ոստիկանները պետք է՞ բռնեին իր հորը և նրա բանվոր ընկերներին, ծեծեին, սվիններով խփեին, մինչև անգամ դաշույններով ծակեին նրանց մարմինները և կախ տային։

Լաո-Հոն ամբողջ մարմնով դողում էր։ Բանվորները ծրագիր էին մշակում ոստիկաններին դիմադրելու, կռվելու նրանց դեմ, մինչև անգլիացի տերերը կատարեն նրանց պահանջը։ Նախօրոք հայտարարված էր գործադուլավոր բանվորներին, որ երբ ոստիկանները մտնեն իրենց թաղը, կռիվը սկսելու համար ազդանշան կտրվի հենց իրենց, Լաո-Հոյի հոր բնակարանի կտուրից, կարմիր դրոշակ ծածանեցնելով։

Այժմ Լաո-Հոյի հայրը և իր ընկերները վիճում էին այն մասին, թե՝ ո՞վ պետք է տար ազդանշանը, որպեսզի գործադուլավոր բանվորները սկսեն կռիվը ոստիկանների դեմ։

Վիճաբանությունը բանվորների միջև գնալով տաք բնույթ էր ստանում։ Վիճում էին այն մասին, թե ով է ամենից հարմար իբրև դրոշակ բարձրացնող։

Փոքրիկ Լաո-Հոն չէր հասկանում, թե ինչո՞ւ էին վիճում այդ մասին։ Չէ՞ որ դրանից ավելի հեշտ բան չկար. ի՞նչ դժվար բան էր։ Լաո-Հոն մինչև անգամ ծիծաղեց ներքնապես, ծիծաղեց հեգնելով մեծ-մեծ բանվորներին, որոնք երկար վիճում էին այդ մասին։

— Մեզնից կարմիր դրոշակ բարձրացնողը պիտի լինի այն մարդը, որ կամ բոլորովին ընտանիքի տեր չէ, և կամ ընտանիքի քիչ անդամներ ունի,— առաջարկեց բանվորներից մեկը։

Բոլորը գլուխները կախեցին, բոլորն էլ ընտանիք ունեին և ընտանիքի շատ անդամներ, մի քանիսը մի, երկու անդամով ավելի պակաս, քան մյուսները։

Լաո-Հոն էլի գլխի չընկավ, բայց հեգնական ժպիտն անհետացավ նրա դեղնավուն շրթունքների վրայից։ Բնազդորեն զգաց փոքրիկ մանուկը, որ իր կարծածի չափ թեթև բան չէր կարմիր դրոշակ բարձրացնելը։ Նրա աչքերի հուրը ավելի բոցավառվեց, նա սկսեց մտածել այդ մասին։ Նա գիտեր, որ կարմիր դրոշակը կլինի այն դրոշակը, որ իր հայրը պահել էր պահարանում։

Այդ դրոշակը ծանր չէր։ Ուրեմն ծանրության համար չէր։ Փոքրիկ մանուկն անգամ կարող էր վերցնել։

Վիճաբանությունը շարունակվեց և Լաո-Հոյի համար պարզ եղավ ամեն ինչ։ Ուրեմն դրա համար չէր։ Նա հասկացավ, որ դրոշակ բարձրացնողն անպայման կլիներ ոստիկանական գնդակի առաջին զոհը։

Լաո-Հոն սենյակի մթին անկյունում սառեց։ Նա պատկերացրեց այն վիճակը, երբ իր հայրը այլևս չէր լինի այս աշխարհում։

*Վայրկենապես պատկերացավ նրա նշաձև փայլուն աչքերի առաջ իր հոր դիակը, որ փռված էր իրենց բնակարանի կտուրի վրա, մինչև անգամ նրան այնպես թվաց, որ լսում էր իր մոր աղիողորմ լացը, նրան թվաց, որ իր մայրը գրկել է իրեն, քույրերին ու եղբայրներին և լաց է լինում։*

*Լաո-Հոն սարսափից, ատելությունից կծեց իր դեղնավուն շրթունքները և կրճտացրեց իր սպիտակ ատամները։*

*Ծանր հարց էր, վճռում էին գործադուլավոր բանվորները, բայց չէին կարողանում եզրակացության գալ։*

*Ամեն մի բանվոր զգում էր, որ ինքը բարձրացնի կարմիր դրոշակը, բայց յուրաքանչյուր բանվորի առաջարկը մերժվում էր մյուսների կողմից՝ նկատի ունենալով յուրաքանչյուրի ընտանեկան դրությունը։*

*Հանկարծ սկսեց խոսել Լաո-Հոյի հայրը։*

*Լաո-Հոն դարձավ ամբողջական ուշադրություն։ Կարծես նրա մարմնի ամեն մի մասնիկը մասնակցում էր լսողությանը, նրա բոբիկ ոտներն անգամ լարված ուշադրությամբ լսում էին հոր խոսքերը։*

*Հայրը սկսեց ծանր և մռայլ, բայց հաստատուն տոնով։*

*— Իմ պարտականությունն է, որ ես բարձրացնեմ կարմիր դրոշակը, չէ՞ որ դրոշակը պետք է բարձրանա իմ բնակարանի կտուրի վրա։*

*Բոլորն էլ մերժեցին։ Նա շարունակեց բացատրել այն բարոյական պարտքը, որ ընկնում էր իր ուսերի վրա։*

*— Թույլ տվեք,— բացականչում էր նա,— որ ես կատարեմ իմ դասակարգային պարտքը։*

*Լաո-Հոն սենյակի անկյունից, կծկված, բայց բոցավառ աչքերով, դիտեց հորը և զգաց, որ հայրն ահա բաժանվում է իրենցից՝ մորից, քույրերից, եղբայրներից և իրենից։ Ուզում էր ձայնը բարձրացնել, ճչալ, փաթաթվել նրան, բայց մանկական խոր բնազդով զսպեց իրեն։*

*Հանկարծ դրսից լսվեցին աղաղակներ և հարայհրոց։*

*Լաո-Հոյի հայրն անմիջապես վազեց դուրս, իսկ մյուսները վազեցին դեպի նեղլիկ լուսամուտը։*

*Լաո-Հոն տեղից չշարժվեց։ Նա անկյունում ավելի կծկվեց, բայց աչքերի հուրն ավելի բոցավառվեց։*

*Քիչ անց ներս ընկավ հայրը և հայտարարեց.*

*— Ոստիկանները լցվել են բանվորական թաղը։*

*— Պետք է բարձրացնել դրոշակը,— աղաղակեց բանվորներից մեկը։*

*Հասավ ահավոր, վճռական րոպեն։*

*Այսպես, թե այնպես, պետք էր որոշեին։ Ուրեմն նրանցից մեկն ու մեկին սպասում էր ստույգ մահը։*

*Կիսախավար սենյակում տիրեց ծանր լռություն։ Կարծես ամբողջ մթնոլորտը կապարացավ։ Ոչ ոք չէ՛ր համարձակվում պատռել այդ ահավոր, ծանր, սև լռությունը։ Բոլորն էլ չռած աչքերով նայում էին կարծես տարածության մեջ։*

*Լաո-Հոյի հայրն էր, որ պատռեց լռությունը։*

*— Պետք է բարձրացնել կարմիր դրոշակը, թույլ տվեք, որ կատարեմ իմ պարտականությունը։*

*Լռություն, ծանր լռություն։*

*— Կարմիր դրոշակը պետք է բարձրացնել,— աղաղակեց Լաո-Հոյի հայրը,— բանվորներն սպասում են։*

*Քար լռություն։*

*Լաո-Հոյի հայրը հանկարծ զգաց, որ լռությունը*



## ՀՐԱՇՔ ՀՐԹԻՌ

Մեր երկրում փորձարկվել է միջմայրցամաքային գերհզոր հրթիռը։

Միջմայրցամաքային հրթիռը կազմված է մի քանի հրթիռներից, որոնք կցված են իրար։ Հրթիռը թռչում է ուղղահայաց և, անցնելով մթնոլորտի հաստ շերտը, սահուն կերպով թեքվում է ու ընդունում հորիզոնական դիրք։ Նրա թռիչքը տեղի է ունենում ավելի քան 1000 կիլոմետր բարձրության վրա։ Հրթիռի արագությունը հասնում է ժամում 16000 կիլոմետրի։ Դա մի քանի անգամ գերազանցում է նույնիսկ ամենահզոր ռեակտիվ ինքնաթիռների արագությունը։

Կարճ ժամանակում անցնելով հսկայական տարածություն, հրթիռը իջել է նախատեսնված կետում։ Այդ հրթիռը կարելի է ուղարկել աշխարհի ցանկացած վայրը։

Այժմ Սովետական Միությունն ունի աշխարհում ամենաուժեղ զենքը։ Դա պատերազմի հրձիգներին սանձելու մի նոր հզոր միջոց է։

համաձայնության նշան էր։ Անմիջապես վազեց դեպի պահարանը՝ կարմիր դրոշակը վերցնելու։

Դրոշակը չկար։

— Ո՞վ է վերցրել կարմիր դրոշակը,— նյարդայնին բղավեց Լաո-Հոյի հայրը։

Ո՛չ մի պատասխան։ Նա վազվզեց սենյակում, ջղաձգությամբ և համառորեն որոնեց դրոշակը։ Չկար ու չկար։

Հանկարծ դրսից լսվեց հրացանների որոտ։

Դրսում կռիվն սկսվել էր անգլիական ածխահանքի տերերի կողմից վարձված ոստիկանների և գործադուլավոր բանվորների՝ միջև։

— Բանվորներն սկսել են կռվել մինչև անգամ առանց ազդանշանի,— ցասումով հայտարարեց Լաո-Հոյի հայրը։— Դուք ինձ չթողիք, որ ժամանակին բարձրացնեի դրոշակը։

Բոլորը լռեցին։ Իրավունք ուներ նա։

— Այժմ մեզ մնում է աճապարել դեպի կռիվը։

Բոլորն էլ շարժվեցին։

Հանկարծ դրսից լսվեց Լաո-Հոյի մոր լացն ու կոծը։ Նա ներս բերավ Լաո-Հոյին գրկած։

Լաո-Հոյի ճակատից վազում էր ալ-կարմիր արյունը։ Նա ձեռքում բռնել էր կարմիր դրոշակը։

Լաո-Հոն դեռ ողջ էր։

Հայրը գրկեց նրան.

— Լաո-Հո, ի՞նչ պատահեց քեզ...

— Կառքի վրա կարմիր դրոշակ բարձրացնելիս խփեցին ինձ,— պատասխանեց փոքրիկ հերոսը և փակեց աչքերն ընդմիշտ։

Հայրը համբուրեց նրա արյունաթաթախ ճակատը, դրեց մոր գիրկը և աճապարեց դեպի փողոց։



Նկ. Կ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ.

# ԻՄ ՍԵՐՆԴԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

Հ. ՍԱՀՅԱՆ



Փոխված է տղաս այս առավոտ,
Լռակյաց է, լուրջ ու ջղային։
Եվ ես հայրական սրտի ցավով
Հարցեր եմ տալիս իմ տղային.
— Ի՞նչ է պատահել տղաս, այդպես,
Ինչո՞ւ ես փակվել դու սենյակում,
Գուցե ծեծե՞լ են փողոցում քեզ,
Վիրավորե՞լ են գուցե բակում։
Ո՞վ է պղտորել քո պարզ հոգին,
Ո՞վ է քո սրտին ցավ պատճառել,
Գուցե, բալիկս, ինչ-որ մեկին
Տված խոստումդ չես կատարել։
Եվ ես լսում եմ՝ կամաց-կամաց
Նրա հոգու մեջ թափանցելով...
— Հո երեխա չե՞մ ես քեզ համար,
Որ քարկոծում ես այդ հարցերով։
Երդում եմ տվել ես հավաքում
Եվ պիոներ եմ դարձել երեկ.
Գիտեմ, թե ինչ են նշանակում
Կարմիր փողկապիս ծայրերն երեք։
Քունս չի տարել ամբողջ գիշեր,
Քո պատմածներն եմ հիշել բոլոր.

Իմ հին դասերն եմ նորից հիշել
Եվ կրկնել եմ դասերն իմ նոր։ —
Եվ ես ներումն եմ ուզում խնդրել
Հարցերիս համար կասկածավոր...
Տղաս չի քնել ամբողջ գիշեր,
Իմ պատմածներն է հիշել բոլոր.
Պալատն է հիշել Ձմեռային
Եվ համազարկը «Ավրորայի»։
Սիվաշի ահեղ մարտն է հիշել
Եվ հաղթանակն է հիշել մերոնց։
Նա Թիմուրին է հիշել հերոս ;
Եվ խիզախներին նրա խմբի,
Եվ գուրգուրել է իր ձեռքերով
Ծաղկունքը նրա հողաթմբի։
Հիշել է անհայտ այն պատանուն,
Որ իր ձեռքերով լուցկին առել
Եվ առաջինն է այս աշխարհում
Պիոներական խարույկ վառել։
Հիշել է համեստ այն պատանուն,
Որ ծաղիկներ է կրծքին շարել,
Եվ մեծ Լենինի ձեռքը ուսին,
Առաջին անգամ Կաշինյում





Էլեկտրական լույսին նայել
եվ գրուցել է նրա մասին։
Հետո հիշել է Սորոգովին
եվ Զոյային է մտաբերել.
Որոնք իրենց կյանքն ամբողջովին
Հայրենիքին են զոհաբերել։
Նա Հունանին է հիշել արի.
Արծիվ Նելսոնին մեր անծնուրաց.
Նրանց գործերն է հիշել բարի
եվ սխրանքներն է հիշել նրանց։
Պիոներներ են եղել նրանք
Իմ այս գանգրահեր տղայի պես։
Մեծացել են այս արևի տակ.
Մի մեծ երկիր են ավանդել մեզ։
Հպարտությամբ եմ նայում որդուս.
— Բալիկս, ես ի՞նչ իմանայի.
Որ մի գիշերում անցել ես դու
Ամբողջ քառասուն տարվա ուղի.
Որ դու խելոք ես դարձել այդքան.
Հասունացել ես մի գիշերում.
եվ իմ սերնդի ամբողջ ճամփան
Կենդանացել է քո հուշերում։
Ա՛ռած ավանդներն իմ սերնդի.
Գնա հայրերիդ ճանապարհով.
Կյանքդ տուր առանց մնացորդի
Քո հայրենիքին... գնաս բարով։

Նկ. Ռ. ՀՈՎԻՎՅԱՆԻ

# Հոկտեմբերի հերոս երեխաները

(Ն. Ի. Պոդվոյսկու հուշերից)

Հոկտեմբերի 25-ի գիշեր: Խավարով պատած Պետրոգրադ: Խաչմերուկներում բոսորագույն խարույկներ... Այդ գիշեր կատարվեց աշխարհում մեծագույն իրադարձությունը: Սահմանագծի նման այդ գիշերն ընկավ հին ու նոր աշխարհների միջև: 1917 թվականի հոկտեմբերի 25-ին ապստամբած ժողովուրդը գրավեց Ձմեռային պալատը...

Կարմիրգվարդիականների, զինվորների ու նավաստիների Ձմեռայինի վրա գրոհող ջոկատներին ղեկավարում էին Պոդվոյսկին, Անտոնով-Օվսեենկոն և Չուդնովսկին: Այդ ահեղ օրերին Պետրոգրադի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահն էր ռևոլյուցիոն մարտերի բովով անցած, 1901 թվականից պարտիայի անդամ Նիկոլայ Իլյիչ Պոդվոյսկին:

Հոկտեմբերի հաղթանակից հետո Պոդվոյսկին շարունակում է անդուլ-կերպով պայքարել մեր երկրի վրա եկած թշնամիների դեմ:

Չնայած իր անչափ զբաղված լինելուն, նա խնամքով հավաքում և գրի էր առնում Հոկտեմբերին վերաբերվող նյութերը:

«Պիոներին» այս համարում մենք տպագրում ենք Պոդվոյսկու հուշերից երկուսը, որոնք գրված են 1927 թվականին:

## ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ

Հոկտեմբերի 25... Ձմեռային պալատի հրապարակ... Պալատի մուտքերը փակված են վառելափայտի բարձր կույտերից կառուցված բարիկադներով: Ձմեռայինում նստած է բուրժուաների, մենշևիկների և աջ սոցիալիստ-ռևոլյուցիոներների կառավարությունը: Ութ ամիս երկրին իշխելու ընթացքում այդ կառավարությունն առաջ է բերել բոլոր աշխատավորների ատելությունը, ժողովրդի զայրույթը հասցնելով ապստամբության:

Հոկտեմբերի 25-ին Պետրոգրադում սկսվեց բանվորների ու զինվորների ապստամբությունը: Ապստամբության հրդեհից թաքնվելով վառելափայտի կույտերի հետևում, յունկերների սվիններով, կանանց գումարտակի և կազակների գնդացիրներով ու հրացաններով պաշտպանվող բուրժուական ժամանակավոր կառավարությունը ռադիոյով օգնության կանչեց: Նա խոստացավ «մինչև վերջը կատարել իր պարտքը», «փրկել ժողովրդին բոլշևիկներից»:

... Ժողովրդի միջից ոչ մեկը օգնության չեկավ բուրժուազիայի կառավարությանը: Ժողովուրդը շարժվում էր դեպի կառավարությունը, բայց ոչ թե նրան բոլշևիկներից փըր-




կերը, այլ բոլշևիկների հետ. Լենինի ղեկավարությամբ բուրժուազիայի կառավարությունը տապալելու: Հրացաններով, գնդացիրներով, թնդանոթներով, գրանատներով զինված ժողովուրդը անդնում էր օղակը Ձմեռային պալատի շուրջը...

Երեք անգամ պալատ ուղարկվեցին անձնատուր լինելու վերջնագրեր: Բայց դրանք չընդունվեցին:

— Գրո՛հ Ձմեռայինի վրա,— հրամայեց ապստամբած ժողովուրդը Պետրոպավլովյան ամրոցի մարտկոցներին. «Ավրորա» հածանավի վեցդյույմանոց հրանոթներին... Կարմիր գվարդիականները, նավաստիները, զինվորները ընթացքի ժամանակ կրակելով, հրացաններով ու գնդացիրներով սլացան դեպի բարիկադները... Կրակին չդիմանալով, կանանց գումարտակը երերաց...

...Կրակի փոթորկի մեջ բարիկադների վրա, չգիտես որտեղից, հայտնվեց մի տղա: Ականջավոր գլխարկը գլխին, ամբողջ ուժով թափահարելով ձեռքերը, տղան մերոնց իր մոտ էր կանչում: Նա ինչ-որ բան էր բղավում, աշխատելով հրանոթների համազարկերից բարձր գոռալ... Բարիկադներից նրա ձայնը կտրեց անցավ կրակի դղրդյունը: Բարիկադների վրայից տղան ցույց էր տալիս դեպի պալատը տանող բացվածքը:

Մարդկային ալիքը հորդում էր բարիկադների արանքով: Զորս կողմը հրաձգություն էր, գոռհմարտ... Կռվի փոթորկի մեջ տղան ճշտորեն կատարում էր հեղափոխության, ուղեցույցի իր պարտականությունը: Բարիկադների արանքով հորդացող մարդկանց ալիքը նրան գետին գլորեց: Բայց նա նորից բարձրացավ, ամբողջ հասակով մեկ կանգնեց բարիկադի վրա: Նա թափահարում էր ձեռքերը, կանչում... Ցույց էր տալիս բացվածքը...

## ՊՐԵՍՆԻԱ ԱՆԴՐԵՅԿԸ

Մոսկվայի հոկտեմբերյան մարտերում մասնակցում էին բանվորական ամբողջ ընտանիքներ: Հայրը հրացանը ձեռքին կռվում էր, մայրը նրան ուտելիք էր բերում, երեխաները փամփուշտ էին հասցնում:

Մոսկվայում հոկտեմբերյան մարտերը տևեցին հինգ օր: Ապստամբության ժամանակ ուժեղ կռիվներ տեղի ունեցան Պրեսնիայում: Այստեղ սպիտակ գվարդիականների կենտրոնն էր՝ Մոսկվայի զինվորական օկրուգի շտաբը: Մի փոքր հեռու գտնվում էր Ալեքսեևյան ուսումնարանը, որտեղ տեղավորված էին յունկերները:

Պրեսնիայում բանվորները խրամատներ փորեցին և նրանց առաջ բարիկադներ սարքեցին: Շատ դժվարություններ քաշեցին այստեղ պաշտպանները: Սառնամանիքն ու քաղցը տանջում էին նրանց: Ամբողջ օրերով, թերթև հագուստով ու հնամաշ կոշիկներով, բանվորները ստիպված էին պաշտպանել իրենց դիրքերը: Նրանք հերթով գնում էին մոտակա թեյարանում տաքանալու:

Մի տղա կար Անդրեև ազգանունով (այս ազգանունը պետք է իմանան և հիշեն բոլորը): Բանվորների բացակայության ժամանակ նա



մնում էր խրամատում: Նա անընդհատ կրակում էր տապանալու գնացած բանվորների մեկ ալս, մեկ այն հրացանից: Իր կրակոցներով Անդրեևն աշխատում էր ցույց տալ յունկերներին, որ բարիկադների բոլոր պաշտպանները տեղերում են, խրամատները դատարկ չեն: Ցրտից փայտացած ձեռքերով տղան ուսին էր սեղմում հրացանը և կրակում:

Պատահաբար հրացանը նրա ձեռքից ընկավ խրամատի առաջ եղած բարիկադի մյուս կողմը: Նա դուրս սողաց խրամատից, որպեսզի վերցնի հրացանը, և հենց այստեղ յունկերները գնդացրի գնդակներով ծածկեցին նրան: Տղան ստացավ քառասունից ավելի վերք: Երեք օր մաքառում էր մահվան դեմ:

Ուշքի գալով, նա հարցրեց.

— Հը՛, շտաբը վերցրի՞ք: Յունկերներին ջարդեցի՞ք:

Նրան այցելության եկած կարմիրգվարդիականները պատասխանեցին.

— Այո՛:

Ցնծությունից տղան մոռացավ իր վերքերը: Ժպտաց և բարձր կանչեց.

— Ուռա՛:

Մի քանի րոպեից հետո նա մահացավ...

## «ՄԵՂՎԻԿ» ԻՆՔՆԱԹԻՌԸ



Սովետական ավիոկոնստրուկտորներն այժմ ստեղծում են մի ինքնաթիռ, որն իր փոքրության պատճառով ստացել է «Մեղվիկ» („Пчёлка“) անունը: Ինքնաթիռը տեղափոխելու է ոչ ծանր բեռներ, փոստ, հիվանդներ: Նա կարող է թռչել և վայրէջք կատարել կոլտնտեսության կալատեղերում, խճուղիների վրա: Նրա կառուցվածքն այնքան պարզ կլինի, որ ամեն մի ավտոմեքենավար կամ ՄՏԿ-ի մեխանիկ կարող է կարճատև ուսուցումից հետո վարել այդ ինքնաթիռը: «Մեղվիկի» ամենափոքր արագությունը մեկ ժամում 35—40 կիլոմետր է, իսկ առավելագույնը՝ 200 կմ:

## ԿԱՍՊԻՑ ԾՈՎՈՎ ԼՈՂՈՒՄ ԵՆ... ԳՆԱՑՔՆԵՐԸ

Բաքվի և Կրասնովոդսկի նավահանգիստներով մեծ քանակությամբ ապրանքներ են փոխադրվում: Սակայն այդ ապրանքները ամեն անգամ վագոններից տեղափոխվում են նավերի վրա: Դա և՛ թանկ է նստում, և՛ երկար ժամանակ է խլում:

Իսկ այժմ, պատկերացրեք մի այլ տեսարան. երկաթգծերը նավամատույցների վրայով ձգվում են մինչև նավի տախտակամածը: Շոգեքարշը գծերի վրայով նավի վրա է քաշում տասնյակ բեռնված վագոններ: Նավը ճանապարհ է ընկնում և ինն ու կես ժամից հետո հասնում հանդիպակաց ափը և այնտեղ նույն ձևով վագոնները տեղափոխվում են երկաթգծերի վրա:

Ծովային լաստանավը շատ ձեռնտու է: Եթե Աշխաբադից մինչև Բաքու շրջանցող երկաթուղու երկարությունը 5218 կմ. է, ապա Կասպից ծովով այն հավասար է 842 կմ: Բացի բեռներից լաստանավը կտեղափոխի նաև 300 ուղևորներ:

Այսպիսի լաստանավեր գործում են Ֆրանսիայի և Անգլիայի նավահանգիստների միջև, դանիական նեղուցներում և Հյուսիսային Ամերիկայի լճերում, ինչպես նաև Կերչի նեղուցում: Սակայն Կասպից ծովի լաստանավի կատարած ուղին կլինի բոլորից երկարը՝ 300 կմ:



# ՀՈԿՏԵՄԲԵՐԻՑ ՀԵՏՈ

Վ. ԿԱՐԵՆՑ

Դու դպրոց ես գնում,
Քո դպրոցի ճամփան
Հոկտեմբերն է զուգել վառ լույսերով,
Որ դու աճես կյանքում,
Որ քո սիրտը ծփա՝
Երազներով կյանքի և հույսերով։

Քո մայրենի լեզուն,
Դասագրքերը քո՝
Հոկտեմբերն է գրել պայծառ այդքան,
Որ ստանաս ուսում,
Որ դու լինես խելքով,
Որ կառուցես երգով քո ապագան։

Իսկ դպրոցից հետո,
Կյանքում այնքան ուղի,
Հոկտեմբերն է քո՛ դեմ բացել կրկին,
Քայլիր անմար խինդով,
Անցիր կյանքիդ ուղին,
Քեզ կուղեկցի նրա լույսը ոսկի։

Նայիր, ալ է այնպես
Քարտեզն հայրենիքի,
Հոկտեմբերն· է գծել այդպես հստակ,
Որ դու ազատ շնչես,
Որ լայնանա հոգիդ,
Որ դու ազատ ապրես արևի տակ։



# ԱՉԵՐ ԿՆՁՈՒ ՀԱՎԱՔԵՑՅԱՆՆԵՐԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Ութերորդ գլուխ

## ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ։ ԴԱՌՆԻԿԻ ԱՏԱՄՆԱՑԱՎԸ։

Դառնիկն ինչքան էլ ականջները սրեց, չկարողացավ որևէ կապակցված բան լսել մոր և Սուսանի զրույցից։ Հյուրասենյակից նրա ականջին միայն հասնում էին առանձին բառեր, օրինակ՝ «կղզի», «ծով», «փոթորիկ», «նավաբեկյալ» և այլն, և մեկ էլ նա լսում էր, թե ինչպես է իր մայրը ծիծաղում։ Իսկ մայրը ծիծաղում էր բավականին հաճախ ու բարձրաձայն։ Երևում էր, որ Սուսանի պատմածները մորը ոչ միայն չեն բարկացրել, այլ նույնիսկ ուրախացրել են։ Դառնիկը նույնիսկ որոշեց հագնվել, որ ինքն էլ մասնակցի զրույցին։ Դե, Սուսանին հո ամեն մանրամասնություն հայտնի չէ։ Չէ, ինչպես երևում է, մայրն իսկապես ուրախացել է։ Տես, նորից նրա ծիծաղը լսվեց...

Հետո Սուսանը գնաց։ Դառնիկը շատ չանցած քնեց։

Առավոտյան, արթնացուցիչի զանգից նա զարթնեց, նորից անկողնում, հիշելով երեկվա անցուդարձը, նորից վերմակը գլխին քաշեց։ Ո՞վ է իմանում, գուցե Սուսանը «երկուսների» մասին էլ է պատմել, և հիմա, առավոտ վաղ, մայրը կսկսի հանդիմանել իրեն... Ի՞նչ պատասխան տա... Այդ մտքերի մեջ էր, երբ մայրը մոտենալով նրա անկողնուն, ձայն տվեց.

— Դառնիկ, վեր կաց, զանգի ձայնը չլսեցի՞ր...

Դե ի՞նչ, հո չէ՞ր կարող ամբողջ օրը պառկած մնալ։ Նա ճմլկոտվեց, հորանջեց և ծույլ-ծույլ շարժումներով սկսեց հագնվել, աշխատելով ցույց տալ, թե դեռ քունը գլխին է։ Միաժամանակ աչքի պոչով հետևում էր մոր դեմքին, որը սենյակն էր կարգի բերում։ Ա՜յ քեզ բան։ Մոր դեմքի արտահայտությունը սովորականի նման էր։ Չլինի՞ թե երեկոյան Սուսանի հետ մայրը չէր խոսում։ Թե չէ, ասես, ոչ մի արտակարգ բան էլ չէր իմացել։ Նույնիսկ գործ անելիս ինչ-որ բան էր երգում քթի տակ։ Այդ նկատելուց հետո Դառնիկն այնքան սրտապնդվեց, որ սկսեց ավելի արագ ու եռանդով հագնվել։ Վերջապես լվացվեց՝ ոչինչ... թեյեց, էլի ոչ մի՛ արտակարգ բան չպատահեց։ Դառնիկը միայն այն ժամանակ, երբ արդեն պայուսակը ձեռքին էր առել և դուռը բաց արած պատրաստվում էր դուրս գալ, մորը հայտնեց.

— Ծնող են կանչել։

— Ինչո՞ւ։

— Չգիտեմ։

— Ինչպե՞ս թե «չգիտեմ»...

— «Երկուսների» համար,—ի վերջո թոթովեց նա։

— Աչքս լո՜ւյս,— մռայլ ու բարկացած ասաց մայրը, ապա ավելացրեց.— Հիմա գնա, չուշանաս, ես հետո կխոսեմ քեզ հետ։

Դառնիկը մեկ ուզեց աստիճաններից իջնել, բայց մի փոքր տատանվելուց հետո դիմացի դուռը թակեց։ Սուսանը կարծես դռան ետևում հենց Դառնիկին էր սպասում։ Անմիջապես դուռը բացվեց, ու կազմ ու պատրաստ նա դուրս եկավ։ Հենց որ շքամուտքից դուրս եկան, Դառնիկն ասաց.

— Դու ինչո՞ւ ինձ խաբեցիր, երեկ ուզեցիր վախեցնել, չէ՞...

— Ի՞նչը խաբեցի...

— Էն, որ ասացիր, թե մամայիս կպատմես։

— Պատմեցի։

— Փչում ես։

— Ազնիվ պիոներական։ Պատմեցի։

— Բա ինչո՞ւ ինձ ոչինչ չասաց։

— Ես ի՞նչ գիտեմ։

— Խաբարբզան ես, բոլորին կասեմ, որ խաբարբզան ես։

— Ասա՛։

Դրանից հետո նրանք մինչև դպրոց այլևս ոչ մի խոսք չփոխանակեցին։ Ասես խռով լինեին իրարից։ Դառնիկի տրամադրությունը շատ վատ էր։ Հիմա ի՞նչ պատասխան պիտի տա ընկերներին, որոնք նրան վստահել էին իրենց գաղտնիքները... Ախր Երվանդը ասաց. «Տեսնենք, ինչո՞ւ չէ»։ Բայց մի ուրիշ միտք էլ էր անհանգստացնում նրան։ Չէ՞ որ Երվանդն ասաց «տեսնենք», ուրեմն ընկերները դեռ հաստատ չէին որոշել այդ... Դպրոցում բոլորը

Սկիզբը տես «Պիոներ» №№ 7, 8, 9 և 10

միանգամից նկատեցին, որ Դանիելի տրամադրությունն ինչ-որ տարօրինակ՝ վատ է։ Նույնիսկ իր սիրելիներից աշխատում էր առանձնանալ։ Դասամիջոցներին աշխատում էր մութ անկյուններում թաքնվել, փախչում էր Զավենի, Վարդանի և Երվանդի դեմքերին նայել։ Հենց որ տեսնում էր Սուսանին մեկն ու մեկի հետ կանգնած խոսելիս, անհանգստանում էր. «Իմ ասածների մասին նա չի՞ պատմում»։

Ամենքը զարմանում էին, թե ինչ է պատահել նրա հետ։ Իսկ ով որ հարցնում էր այդ մասին, Դանիելը մռայլ, թթված դեմքով, աշխատելով զինվորների աչքերի մեջ չնայել, պատասխանում էր.

— Ատամս է ցավում...

Բայց ահա անցավ առաջին դասը, երկրորդը, երրորդը՝ ոչինչ, ոչինչ չպատահեց։ Ահա և չորրորդ դասը։ Սա ինչ բան է։ Լավ էր այդ խաղաղությունը, բայց այդ խաղաղության մեջ ինչ-որ չարագուշակ բան կար, և Դանիելի «ատամնացավը» հետզհետե սաստկանում էր։

## Գլուխ իններորդ և վերջին

## ՈՐՏԵՂ ՎԱՐԴԱՆԸ ՀԱՆԿԱՐԾ ՀԻՇՈՒՄ Է ԱՆՊԱՏԱՍԽԱՆ ՄՆԱՑԱԾ ՀԱՐՑԸ ԵՎ ՈՐՏԵՂ ՊԱՐԶՎՈՒՄ Է, ՈՐ ՈՉ ՄԻԱՅՆ ՋՈՒՐՆ Է ՇՈԳԻԱՆՈՒՄ

Բայց վերջին դասից առաջ, հենց որ դասամիջոցն սկսվեց, Վարդանյանը չորրորդ «ա» դասարանի դուռը կիսաբաց անելով բացականչեց.

— Աղնավուրյան Երվանդ, եկ ինձ մոտ, ուսուցչանոց։

Երվանդն անմիջապես գնաց։

Ահ, ինչպես երևում է խաղաղությունը խախտվեց։ Դանիելը վախից ու սարսափից այնպես էր կծկվել, որ քիչ էր մնում գլուխը մտցներ ուսերի մեջ։ Սոնիկ անունով մի աղջիկ, որ նստում էր Դանիելի կողքին, խորհուրդ տվեց.

— Քանի որ ատամդ էդպես ցավում է, հրաժարվիր վերջինից, տուն գնայիր։ Ուզում ես ես ընկեր Վարդանյանին խնդրեմ։

Բայց Դանիելը գլուխը բացասաբար շարժեց և հարևանուհուն նայեց մի այնպիսի հայացքով, որ նա էլ քիչ էր մնում լաց լիներ։

Լավ կլիներ գնար։ Գնար, փախչեր, հեռանար ընկերների հայացքներից, բայց ինչպե՞ս, որտե՞ղ...



Դասի զանգը տվեց, բոլորը տեղավորվեցին իրենց տեղերը, բայց Երվանդը դեռ չկար: Վերջին դասը պատմություն էր, և ահա Վարդանյանը դասարան մտավ Երվանդի հետ միասին: Երվանդը գլխիկոր, կաս-կարմիր կտրած, սուս ու փուս տեղավորվեց իր նստարանի վրա, Վարդանի կողքին:

Դասը սովորական կարգով ընթացավ, Վարդանյանը աշակերտներից մի քանիսին հարցրեց նախորդ դասը, ապա սկսեց նորը պատմել: Ամբողջ դասի ընթացքում Երվանդը նստած էր լուռ, հայացքը գետնին խոնարհած: «Ով գիտի, ինչքա՞ն է ընկեր Վարդանյանը բարկացել խեղճի վրա, «երկուսների» համար»,— մտածեց Երվանդի մասին Վարդանը և, սրտանց ցանկանալով որևէ կերպ նրան մխիթարել, կամացուկ շշնջաց.

— Է՜հ, ոչինչ, կգնանք մեր կղզին, ամեն ինչ լավ կլինի: Էնտեղ...

Բայց նա լռեց, որովհետև Երվանդն այնպիսի սառը, համարյա թշնամական հայացքով նայեց Վարդանին, որ տղայի գլխից բոլոր բառերը միանգամից դուրս թռան: Այստեղ Վարդանի գլխում մի անպատեհ միտք ծագեց: Այդ միտքը նրան այնքան անհանգստացրեց, որ ինչքան էլ ընկերը բարկացած էր, չկարողացավ իրեն զսպել:

— Երվանդ,— շշնջաց նա:

— Ի՞նչ,— դժկամ արձագանքեց Երվանդը:

— Հիշո՞ւմ ես, էն օրը, երբ առաջին անգամ պատմեցիր կղզու մասին, մի բան հարցրեցի, բայց հայրիկս շտապեցրեց, գնացի, էդպես էլ չպատասխանեցիր:

— Ի՞նչ հարցրեցիր...

— Հարցրեցի, թե էն երեք օրը, որ մնացիր կղզում, բա մամադ բան չասա՞ց...

— Հետո, ի՞նչ ես ուզում...

— Էդ եմ ուզում իմանալ, է՛լի, բա մամադ բան չասա՞ց...

— Դու էլ, էս սրտիս, բան գտար հարցնելու,— բարկացավ նրա վրա Երվանդն ու երեսը շրջեց ընկերոջից:

Վարդանը նույնպես վիրավորված լռեց: «Ընկեր Վարդանյանը վրան բարկացել է, հիմա ջղայնությունն ինձ վրա՞ է թափում»,— մտածեց նա:

Երբ մի քանի րոպե էր մնում զանգին, ընկեր Վարդանյանն ասաց.

— Երեխանե՛ր, զանգից հետո չցրվեք: Մի փոքրիկ հավաքույթ ենք ունենալու:

Քիչ հետո զանգը տվեցին: Վարդանյանը դիմեց Սուսանին:



— Միջանցքում ծնողներ են սպասում, ներս հրավիրիր նրանց:

Եվ ահա ներս եկան Վարդանի հայրը և Դոնիկի, Երվանդի ու Զավենի մայրերը:

— Երեխանե՛ր,— դիմեց Վարդանյանը դասարանին,— ձեր դասընկեր Երվանդ Ազնավուրյանը անցյալ ամառ Կասպից ծովում մի կղզի է գտել, որը կոչել է իր անունով՝ Ազեր կղզի:

Ամբողջ դասարանը, բացի մի քանիսից, որոնք այդ պատմությունը գիտեին, զարմացած հայացքներով նայեցին Երվանդին:

— Ես զրուցեցի Երվանդի հետ և նա ինձ առանց որևէ բան թաքցնելու պատմեց այդ կղզին հայտնագործելու պատմությունը: Ահա թե ինչպես է պատահել այդ: Մեզնից շատերը գիտեն արդեն, թե մեր Երվանդն ինչքան շատ է սիրում ընթերցանություն: Դասարանում ամենից շատ Երվանդն է գիրք կարդում: Նա արդեն բավականին հաստափոր գրքեր է կարդացել: Կարդացել է Ժյուլ Վեռնի մի քանի մեծածավալ վեպերը, որոնց թվում «Խորհրդավոր կղզին», կարդացել է «Ռոբինզոն Կրուզոն», «Գանձերի կղզին» և նման շատ ուրիշ գրքեր: Եվ ահա...

Վարդանյանը շարունակեց պատմել և բոլորը իմացան հետևյալ պատմությունը:

Երվանդն անցյալ ամառ առաջին անգամ տեսավ ծովը: Նա մնացել էր զարմացած: Ինչ վիթխարի բան է այդ ծովը, ոչ վերջ ունի, ոչ սահման: Մի

քանի անգամ նա ձկնորսական նավակով, տեղացիների հետ միասին զբոսնեց ծովի վրա, և նրա զարմանքն ավելի շատացավ։ Գնում ես, գնում, իսկ ծովի վերջը չի երևում, և ահա նա իր կարդացած գրքերի տպավորության տակ սկսեց երազել, թե այդտեղ, Կասպից ծովում նույնպես կարող են լինել մարդկանց կողմից դեռևս չհայտնաբերված կղզիներ։ Մտածեց, թե ինչքա՜ն լավ կլինի, եթե իրեն հաջողվի գտնել այդ կղզիներից մեկը և ապա այն նվիրի մեր Հայրենիքին։ Երվանդն այնքան հրապուրվեց այդ երազանքով, որ շուտով սկսեց երևակայել, թե ինքն արդեն գտել է այդ կղզին և նույնիսկ կղզին կոչեց Ազեր։ Հետո մինչև անգամ օրագիր սկսեց պահել, որտեղ գրանցում էր իր երևակայության մեջ ստեղծած կղզու վրա իր հետ պատահած դեպքերը...

— Ուրեմն այդ ոչ թե Ազեր, այլ Երազ կղզի է եղել,— բարձրաձայն նկատեց երեխաներից մեկը։ Բոլորը ծիծաղեցին։ Առանց այն էլ, գլխի ընկնելով ամեն ինչ, աշակերտները ժպտում էին, իրար նշանացի ինչ-որ բաներ հասկացնում։ Միայն մեր չորս հերոսներն էին, որ նստել էին ամոթահար ու գլխահակ։

— Միանգամայն ճիշտ է, երեխաներ, այդ Երազ կղզի է, երազների, երազանքի կղզի։ Լավ բան է երազելը, երեխաներ, երևի դուք բոլորդ էլ մի-մի նվիրական երազանք ունեք ձեր ապագայի համար։ Երազում են ոչ միայն փոքրերը, այլև մեծերը։ Օրինակ, իմ երազանքն է, որպեսզի ես ձեզ բոլորիդ տեսնեմ լավ, պիտանի մարդիկ դարձած։ Ձեզանից մեկը երազում է դառնալ օդաչու, մյուսը՝ դասատու, մի երրորդը՝ գիտնական։ Երվանդն էլ երազում է դառնալ աշխարհագրագետ, այդ բոլորը լավ են, իհարկե, բայց Երվանդը երազելով մի լավ բանի մասին, միաժամանակ սխալներ է թույլ տվել...

Վարդանյանը շարունակեց խոսել Երվանդի սխալների մասին։

Հիմա օդային, ծովային տրանսպորտն այնքան է զարգացել, որ մի այնպիսի բանուկ և երբեք չսառչող ծով, ինչպիսին Կասպից ծովն է, լրիվ ուսումնասիրված է, լրիվ հետազոտված։ Ռոբինզոն Կրուզոյի, ինչպես նաև «Խորհրդավոր կղզու» հերոսների միջոցով հեղինակները նպատակ են ունեցել դաստիարակել մարդկանց մեջ քաջություն, համառություն, աշխատասիրություն։ Ռոբինզոնի մասին երկար ժամանակ սխալ տեսակետ է եղել, իբր թե Ռոբինզոնն ապացուցում է, որ մարդը կարող է ապրել նույնիսկ միայնակ, ողջ հասարակությունից կտրված։ Բայց չէ՞ որ Ռոբինզոնն իր կղզում օգտվել է այնպիսի գործիքներից, որոնք մարդիկ են պատրաստել, չէ՞ որ Ռոբինզոնի այն գիտելիքները, որոնց շնորհիվ նա կարողացավ ապրել անմարդաբնակ կղզում, կուտակվել էին շնորհիվ այն բանի, որ նա ծնվել ու մեծացել էր մարդկանց միջավայրում։ Մարդն իսկական, արդյունավետ գործունեություն կարող է ծավալել միայն մեծ, առողջ ու ուժեղ կոլեկտիվի մեջ և ոչ թե միայնակ, իսկ դրա համար շատ գիտելիքներ են պետք։ Մինչդեռ Երվանդը մտածել է հավաքել մի քանի ընկերների, նրանց հետ միասին ամռանը գնալ ծովափ, գտնել իր Ազեր, կամ ինչպես ավելի ճիշտ ասեց՝ Երազ կղզին և ապա այն նվիրել Հայրենիքին։ Ամեն գործով էլ կարելի է օգտակար լինել Հայրենիքին, միայն թե դրա համար հարկավոր են շա՜տ, շատ գիտելիքներ։ Հարկավոր է լավ սովորել, լավ իմանալ հայրենի երկիրը, դրա համար պետք է էքսկուրսիաներ կազմակերպել։ Մինչդեռ Երվանդը, Դանիկը, Վարդանն ու Զավենը հրապուրվելով իրենց երազանքով, աչքաթող են արել դասերը։

Վերջում, Վարդանի հայրն էլ խոսեց.

— Ազեր կղզու պատմությունը մի օգուտ ունեցավ թե՛ Երվանդի և թե՛ նրա ընկերների համար,— ասաց նա։— Իրենց փորձից նրանք հիմա կիմանան, թե ինչքա՜ն բան ունեն կյանքում սովորելու, ինչքան քիչ գիտեն։ Նույնիսկ կղզու լայնության ու երկարության աստիճաններն այնպիսի թվերով են նշանակել, որ այդպիսի կետ երկրագնդի վրա չկա։

Վարդանի հայրը երկար խոսեց տղաների սխալների մասին, ապա իր խոսքն ավարտեց, հույս հայտնելով, որ այս պատմությունը խրատ կլինի, որպեսզի ամենքն էլ սրանից հետո ավելի ջանասիրաբար սովորեն։

— Մեր կղզին,— հանկարծ տեղից խոսեց Զավենը,— շոգիացավ ջրի պես...

Բոլորը ծիծաղեցին, իսկ Վարդանյանը ասաց.

— Ոչ, Ազեր կղզին շոգիացավ, բայց Երազը, երազանքը մնաց։ Ձեր երազանքները չեն շոգիացել, բայց դրանց հասնելու համար պետք է սովորել, շատ սովորել, լավ սովորել։

Մեր հերոսներն էլ ոտքի կանգնեցին և խոսք տվեցին, որ այսուհետև լավ կսովորեն։

Արդեն տան ճանապարհին, Երվանդը Վարդանի թևից քաշելով, նրան մի կողմ տարավ և ասաց.

— Ընկեր Վարդանյանը մի բան ասաց հայրենի երկիրն ուսումնասիրելու մասին։ Հիմի ես Ազեր կղզուց ավելի հետաքրքիր բան մտածեցի։

Բայց Վարդանը ոչինչ չպատասխանեց։

— Ի՞նչ է, նեղացե՞լ ես ինձնից։

— Չեմ նեղացել,— ասաց Վարդանը,— բայց ափսոսում եմ մեր Ազեր կղզին, լավն էր, ափսոս գոլորշիացավ։

— Ինչո՞ւ գոլորշիացավ, հո ընկեր Վարդանյանն ասաց, որ նա մնաց որպես Երազ կղզի։ Իսկ մենք դեռ ավելի հետաքրքիր բաներ կմտածենք...

— Նորից նավաբեկյալնե՞ր պիտի դառնանք։

— Չէ՛,— ասաց Երվանդը,— առանց նավաբեկյալներ դառնալու։

* * *

Այստեղ ավարտվում է Ազեր կղզու պատմությունը։ Բայց Երվանդի ու նրա ընկերների մասին դուք դեռ շատ բաներ կիմանաք, որի մասին հեղինակը կպատմի մեկ ուրիշ պատմվածքում։

## ՏԻԵԶԵՐՔԻ ՀԵՏԱԽՈՒՅԶԸ



Մարդկության վաղեմի երազանքն էր՝ թափանցել տիեզերքի խորքերը, ճանաչել նրա գաղտնիքները, գտնել ու հետազոտել նոր աշխարհներ։ Այդ երազանքը իրականացնելու համար գիտնականները երկար ու քրտնաջան աշխատանք են կատարել։ Ռուս մեծ գիտնական Ցիոլկովսկին առաջինն ապացուցեց միջմոլորակային թռիչքների հնարավորությունը։ Նրա շնորհիվ մեր երկիրը դարձավ տեսական աստղագնացության հայրենիք։

Այժմ Սովետական Միությունն իրավամբ համարվում է նաև գործնական աստղագնացության հայրենիք։ Հոկտեմբերի 4-ին երկինք բարձրացավ և սկսեց երկրագնդի շուրջը պտտվել սովետական գիտնականների ստեղծած Երկրի առաջին արհեստական արբանյակը։

Հրթիռը արբանյակին հաղորդել է մեկ վայրկյանում մոտ 8000 մետր արագություն։ Նա վիթխարի արագությամբ պտտվում է Երկրի շուրջը, մեկ ժամում անցնելով 28 հազար 800 կմ տարածություն։ Մեկ պտույտում տևողությունը 1 ժամ 36,2 րոպե է, իսկ թռիչքի բարձրությունը՝ 900 կիլոմետր։ Սակայն այդ արագությունը աստիճանաբար նվազում է։ Արբանյակը իրենից ներկայացնում է 58 սմ տրամագիծ և 83,6 կգ քաշ ունեցող ալյումինե համաձուլվածքներից պատրաստված մի գունդ։ Նրանում տեղադրված են երկու ռադիոհաղորդիչներ, որոնք անընդհատ ազդանշաններ են տալիս։ Բացի այդ, արբանյակի ներսում կան չափող ճշգրիտ գործիքներ ու մեխանիզմներ։

Աշխարհի տարբեր կետերում գտնվող գիտական կայանները հետևում են արբանյակի թռիչքին։ Մեր երկրում տասնյակ ռադիոկայաններ, 66 օպտիկական դիտակետեր և բազմաթիվ ռադիոսիրողներ ընդունում են արբանյակի ազդանշանները։ Ծագող ու մայր մտնող Արեգակի ճառագայթներում օպտիկական հասարակ գործիքներով կարելի է տեսնել նրան։ Որոշ տեղերում տեսել են նաև սովորական աչքով։ Հաշվումները ցույց են տը-



վել, որ արբանյակը, հասնելով մթնոլորտի խիտ շերտերին, իր վիթխարի արագության հետևանքով կայրվի մի քանի տասնյակ կիլոմետր բարձրության վրա:

Սովետական Միությունը միջազգային գեոֆիզիկական տարվա ընթացքում կարձակի մի քանի ավելի խոշոր արբանյակներ, որոնց մեջ կլինեն նաև կենդանիներ: Դա հնարավորություն կտա ուսումնասիրելու, ինչպես Երկիր-մոլորակը, այնպես էլ տիեզերական տարածության հատկությունները և ուղի կհարթի իրականացնելու միջմոլորակային ճանապարհորդությունները:

Երկրի արբանյակի արձակման լուրը ցնցել է ամբողջ աշխարհը: Մարդկությունը մի անգամ ևս համոզվեց, որ սովետական գիտությունն ամենաառաջավորն է աշխարհում:




## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«ՊԻՈՆԵՐ» № 9

Աշխարհի չեմպիոնները — *Ստեյնից, Լասկեր, Կապաբլանկա, Ալյոխին, Էյվե, Բոտվիննիկ:*

Կարո՞ղ եք — *«Սիրեցեք գիրքը՝ գիտության աղբյուրը»:*

Թվաբանական խնդիր — *Անկյունագծերով տեղավորված վեցական վարդերը հանելու դեպքում յուրաքանչյուր հորիզոնական և ուղղահայաց շարքում կմնա չորսական վարդ:*

Հանելուկներ — *Նապաստակ, աղվես, սիրամարգ, ստվեր, շաբաթն ու շաբաթվա օրերը:*

«ՊԻՈՆԵՐ» № 10

Կրոսվորդ — *Հորիզոնական — 1. Իսահակյան, 5. Նեգր, 6. Ասիա, 8. Մուրացան, 11. ածական, 13. Սահարա, 15. մայիս, 17. ալպինիստ, 18. Բրազիլիա, 20. «Սմենա», 21. Ամասիա, 24. Տալլին, 26. Աղմաղան, 27. տետր, 28. Դելի, 29. Ստեփանյան:*

*Ուղղահայաց — 2. Սարմեն, 3. արշալույս, 4. անանաս, 5. Նիվա, 7. ալֆա, 9. Գասպարյան, 10. «Վարդանանք», 12. Կոմիտաս, 14. հորինել, 15. Մասիս, 16. Սիրիա, 19. Գերմանիա, 22. առատ, 23. «Արարատ», 24. տունդրա, 25. լորի:*

Անափ ծով — *Սարգասյան ծովը Ատլանտյան օվկիանոսում:*

Հնարամիտ Սուրիկը — *Սուրիկը դանակի ծայրը իջեցնում է ճեղքի մեջ և նրան մոտեցնում մագնիսը: Դանակի ծայրը մագնիսանում է և ձգում ասեղներին: Այս ձևով նա բոլոր ասեղները հանում է:*

Աշխարհագրական կրոսվորդ — *1. Դանուբ, 2. Իլմեն, 3. Բիրմա, 4. Ալժիր, 5. Միլան, 6. Վոլգա: Կենտրոնի շրջանում՝ Բերինգ:*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Անմոռանալին — Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . 1
2. Հոկտեմբերի առաջին օրերին — Վ. ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ 3
3. Մի անգամ Հոկտեմբերի 25-ին... — Ա. ԲԱԿՈՒՆՑ . . 7
4. Աշխատողի մուրազը . . . 11
5. Այստեղ անապատ է եղել — Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . 13
6. 16 հազար տոննանոց հաստոցը . . . . . . . . . . 16
7. Լաո-Հո — Վ. ԹՈԹՈՎԵՆՑ . 17
8. Հրաշք ներկը . . . . . . . 19
9. Իմ սերնդի նավապարով — Հ. ՍԱՀՅԱՆ . . . . . . . 21
10. Հոկտեմբերի հերոս երեխաները — Ն. ՓՈԴՎԱԼՅԱԿԻ . . 23
11. Մեղվին խնձորիկը . . . 25
12. Կապույտ ծովով լողում են գնացքներ . . . . . . . . 25
13. Հոկտեմբերից հետո — Վ. ԿԱՐԵՆՑ . . . . . . . 26
14. Ազեր կղզու նավարկյալները — Շ. ԹԱԹԻԿՅԱՆ . . 27
15. Տիեզերքի հետախույզը . . 31


Շապիկի 1-ին էջը՝
Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Շապիկի 2-րդ էջում՝
Վ. Ի. ԼԵՆԻՆ
Նկ. Պ. ՎԱՍԻԼԵՎԻ




„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 09942. Պատվեր 1187. Տիրաժ 5000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 29/X 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.

# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ




1958 թվականին

**ԱՄՍԱԳՐՈՒՄ ԿՏՊԱԳՐՎԵՆ**

*պատմվածքներ,*
*բանաստեղծություններ,*
*հեքիաթներ,*
*զրույցներ,*
*հանելուկներ,*
*խաղեր,*
*հետաքրքրաշարժ*
*տեղեկություններ*

ԵՐԵԽԱՆԵՐԻ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ՝

*բանաստեղծություններ և*
*պատմվածքներ,*
*նկարներ և*
*լուսանկարներ։*

**ԿՍԿՍՎԻ ՏՊԱԳՐՎԵԼ**

*ամսագրի մշտական հերոսներ Պավլիկ Ռասովիկի և Ներկար Մակարի արկածների շուրջը*

ԿՏՊԱԳՐՎԵՆ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆԻ,
ՎԱԽՏԱՆԳ ԱՆԱՆՅԱՆԻ,
ՍԱՐՄԵՆԻ,
ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆԻ,
ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆԻ,
ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆԻ,
ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ և
ՄՅՈՒՍՆԵՐԻ ՆՈՐ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Ակնարկներ կտպագրվեն պիոներների և գպրոցականների հետաքրքրական գործերի մասին**

ԱՄՍԱԳՐԻՆ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ**

*12 ամիսը—24 ռ., 6 ամիսը—12 ռ.,*
*9 ամիսը—18 ռ., 3 ամիսը— 6 ռ.։*

**ԱՄՍԱԳԻՐԸ ԳՈՒՆԱՎՈՐ Է**
**ԵՎ ՆԿԱՐԱԶԱՐԴ**





# ԾԱՂԿԻ՜Ր, ԱԶԱՏ ԻՄ ՀԱՅՐԵՆԻՔ...



Մոսկվայի բազմահարկ շենքերից մեկը



Մեծ Վոլգայով նավարկում են նոր տիպի ջերմանավեր: Դրանցից է «Գաստելլոն», որն ունի երեք տախտակամած և փոխադրում է 500 ուղևոր:



Ամեն տարի շարք են մտնում նոր, հզոր էլեկտրակայաններ:



Էստոնիայի «Վոլտա» գործարանի խոշոր մեքենաների ցեխը: